# Ազգագրական հանդէս
# *Azgagrakan Hande's [Ethnographic Review]*

## Սանահին
## Sanahin

Isahak Harutiwnian's study of the village and monastery of Sanahin, from *Azgagrakan Hande's [Ethnographic Review]* III (1898), pp. 273-315, in 54 pdf pages. Indexed by Robert Bedrosian, October, 2015.

---

### III գիրք (1898)

# ՍԱՆԱՀԻՆ

ԻՍ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ

## I.

## *ՍԱՆԱՀՆԻ ԴԻՐՔԸ ԵՒ ԿԼԻՄԱՆ*

---

Սանահնի թերակղզիաձև փոքրիկ բարձրավանդակը գտնւում է ծովի մակերևոյթից 1000 մետր բարձրութեան վրայ՝ ընկնելով 62°20' արևելեան երկարութեան և 41°6' հիւսիսային լայնութեան տակ։ Հին Հայաստանի պատմական Մեծ Հայքի Գուգարաց աշխարհի Տաշիրք կամ Ձորափոր գաւառումն էր, իսկ այժմ Տփխիսի նահանգի Լոռուայ գաւառում։

Հարաւային կողմից Սանահնի անտառապատ լեռներին կպած այդ թերակղզին երեք կողմից շրջապատուած է ձորերով. արևելեան կողմից «Աստուածածնայ» կոչուած ձորն է. արևմտեան կողմից «Սևորդեաց» կամ տեղական բարբառով «Սադու ձոր»-ը. հիւսիսային կողմից Ձորագետ կամ Դեբէտ գետի ձորը։ Հորիզոնի վրայ երևում են. արևելեան կողմից՝ «Նորվանք» կոչուած փոքրիկ դաշտավայրը, Որնակ գիւղի դաշտը և Հաղբատ գիւղն իր սարով։ Հիւսիսային կողմից՝ «Մադան» կամ «Ալավերդի» կոչուած պղնձահանքը, «Կոշաբերդ»-ը. հիւսիս-արևելեան կողմից՝ «Աթոռիկ» կոչուած փոքրիկ բարձրավանդակը. հիւսիս-արևմտեան կողմից՝ «Լալուար» լեռը, որ «Գինդդար» էլ է կոչւում։ Արևմտեան կողմից Սևորդեաց ձորն է, իսկ հարաւ-արևմտեան կողմից՝ Սանահնի անտառապատ լեռները. հարաւ-արևելեան կողմից՝ Որնակի լեռները։

Սանահնի բնութիւնը գեղեցիկ է և զբաղեցնող. շրջա-

պատուած լինելով լեռներով՝ ենթարկուած չէ մշտական և խիստ հողմերի, այլ ժամանակաւոր թեթև քամիների։ Անձրևներ լինում են գարնանը, մինչև յունիս ամիսը. լինում է ժամանակ, որ շրջակայ լեռներն օրերով ու շաբաթներով ծածկուած են լինում թանձր մշուշով կամ մէգով։

## II.

## ՍԱՆԱՀԻՆ ԳԻՒՂԸ

Գիւղն այժմ ունի երեսուն տուն հայ բնակիչ՝ զանազան տեղերից եկած. կան նաև Արղութեանց իշխանական տոհմին պատկանող գիւղացի ընտանիքներ։ Գիւղացիները պարապում են երկրագործութեամբ, անասնապահութեամբ և այգեգործութեամբ։ Կալուածքը պատկանում է Արղութեանց երկայնաբազուկ իշխանական տոհմին և մասամբ էլ վանքին—վանքը ստանում է եկամտի եօթերորդ մասը։— Գիւղացիները շատ քիչ հող ունենալով և այն էլ մի այդպիսի քարքարոտ տեղ, ստիպուած են մաքառել բնութեան ամեն տեսակ արհաւիրքների դէմ, պահպանելով իրենց գոյութիւնը հողից ստացուած չնչին արդիւնքով։ Այգիներից շօշափելի արդիւնք չեն կարող ստանալ, որովհետև գտնւում են բաւականին հեռու, ձորի մէջ և ճանապարհ էլ չունին արտահանելու. այգիների թիւն էլ շատ սահմանափակ է՝ դարձեալ տեղ չլինելու պատճառով։ Առհասարակ աղքատ կեանք են վարում և արդիւնաբերելու ոչինչ կամ շատ քիչ բան ունին։ Մի բանով միայն սանահնեցիք յայտնի են ամբողջ Լօռում—այդ քնքոյշ սեռի ներկայացուցիչների արտաքին գեղեցկութիւնն է. կանանց տիպը համակրելի է, դէմքի գեղեցկութիւնը կանոնաւոր և համաչափ գծագրուած. այդ է պատճառն ահա, որ Սանահնեցոց մականունը Լօռում յայտնի է իբրև «հարսնասիրուն սանահնեցիք»։ Թէ կանայք և թէ տղամարդիկ՝ օդի և ջրի ազդեցութեան ներքոյ՝ ֆիզիկապէս առողջ կազմուածք ունին, սակայն տգիտութեան

պատուած լինելով լեռներով՝ ենթարկուած չէ մշտական և խիստ հողմերի, այլ ժամանակաւոր թեթև քամիների։ Անձրևներ լինում են գարնանը, մինչև յունիս ամիսը. լինում է ժամանակ, որ շրջակայ լեռներն օրերով ու շաբաթներով ծածկուած են լինում թանձր մշուշով կամ մէգով։

## II.

## ՍԱՆԱՀԻՆ ԳԻՒՂԸ

---

Գիւղն այժմ ունի երեսուն տուն հայ բնակիչ՝ զանազան տեղերից եկած. կան նաև Արղութեանց իշխանական տոհմին պատկանող գիւղացի ընտանիքներ։ Գիւղացիները պարապում են երկրագործութեամբ, անասնապահութեամբ և այգեգործութեամբ։ Կալուածքը պատկանում է Արղութեանց երկայնաբազուկ իշխանական տոհմին և մասամբ էլ վանքին—վանքը ստանում է եկամտի եօթերորդ մասը։— Գիւղացիները շատ քիչ հող ունենալով և այն էլ մի այդպիսի քարքարոտ տեղ, ստիպուած են մաքառել բնութեան ամեն տեսակ արհաւիրքների դէմ, պահպանելով իրենց գոյութիւնը հողից ստացուած չնչին արդիւնքով։ Այգիներից շօշափելի արդիւնք չեն կարող ստանալ, որովհետև գտնւում են բաւականին հեռու, ձորի մէջ և ճանապարհ էլ չունին արտահանելու. այգիների թիւն էլ շատ սահմանափակ է՝ դարձեալ տեղ չլինելու պատճառով։ Առհասարակ աղքատ կեանք են վարում և արդիւնաբերելու ոչինչ կամ շատ քիչ բան ունին։ Մի բանով միայն սանահնեցիք յայտնի են ամբողջ Լօռում—այդ քնքոյշ սեռի ներկայացուցիչների արտաքին գեղեցկութիւնն է. կանանց տիպը համակրելի է, դէմքի գեղեցկութիւնը կանոնաւոր և համաչափ գծագրուած. այդ է պատճառն ահա, որ Սանահնեցոց մականունը Լօռում յայտնի է իբրև «հարսնասիրուն սանահնեցիք»։ Թէ կանայք և թէ տղամարդիկ՝ օդի և ջրի ազդեցութեան ներքոյ՝ ֆիզիկապէս առողջ կազմուածք ունին, սակայն տգիտութեան

խաւարը դեռ ևս անթափանցելի է. դպրոց չունին։ Նիւթական միջոցներից զուրկ և հազիւ իրենց կենսական պիտոյքները հոգացող գիւղացիներին հարկաւ այնքան էլ չէ կարելի մեղադրել, որ չեն հասկանում ուսման նշանակութիւնը և իրենց զաւակներին թողնում իրենց պէս անկիրթ, բայց ի՞նչ ասենք այդ գիւղից սերուած և Թիֆլիզում փարթամ կեանք վարող ու մեծ դիրք ունեցող Արղութեան Երկայնաբազուկներին, որ տարեկան միքանի հարիւր մանէթ ծախսելով՝ գոնէ միդասեան դպրոց չեն պահել իրենց հայրենի օջաղում։ Ի՞նչ ասենք մեր հոգևոր վարչութեանը, որ մի վանական դպրոց անգամ չի պահում այնտեղ, ուր երբեմն «ճեմարան»-ներ են եղել և աստուածաբանութեան նշանաւոր ուժեր դասախօսել...։

## III.

### ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

---

Գուգարաց աշխարհի մասին շատ բան չենք գտնում մեր դասական մատենագրութեան մէջ. այս երկիրը սկզբում յիշւում է իբրև Գուգարաց բդեշխութիւն և ապա իբրև Բագրատունեաց իշխանական կալուածք. յիշւում է նաև որպէս հանգստարան կամ գերեզմանատուն Բագրատունի թագաւորների։

Աշոտ-Ողորմած Բագրատունի արքայի անդրանիկ որդի Սմբատն երբ ժառանգում է Բագրատունեաց հարստութեան գահը՝ Անին, նրա երկրորդ որդի Աբասը ըմբոստանալով իր հօր և եղբօր դէմ՝ կազմում է Կարուց անկախ թագաւորութիւնը։ Որպէս զի կրտսեր որդի Գուրգէնն էլ իր եղբօր պէս ըմբոստանալով խռովութիւններ չյարուցանէ, Աշոտ-Ողորմածը տալիս է նրան Գուգարաց աշխարհը, ուր նա մնում է իբրև անկախ իշխան և մեռնելուց յետոյ թաղւում Սանահնի վանքում, Սուրբ Աստուածածնայ եկեղեցու երևելեան որմի տակ-

խաւարը դեռ եւ անթափանցելի է. դպրոց չունին։ Նիւթական միջոցներից զուրկ և հազիւ իրենց կենսական պէտոյքները հոգացող գիւղացիներին հարկաւ այնքան էլ չէ կարելի մեղադրել, որ չեն հասկանում ուսման նշանակութիւնը և իրենց զաւակներին թողնում իրենց պէս անկիրթ, բայց ի՞նչ ասենք այդ գիւղից սերուած և Թիֆլիզում փարթամ կեանք վարող ու մեծ դիրք ունեցող Արղութեան Երկայնաբազուկներին, որ տարեկան միքանի հարիւր մանէթ ծախսելով՝ գոնէ միդասեան դպրոց չեն պահել իրենց հայրենի օջախում։ Ի՞նչ ասենք մեր հոգեւոր վարչութեանը, որ մի վանական դպրոց անգամ չի պահում այնտեղ, ուր երբեմն «ճեմարան»-ներ են եղել և աստուածաբանութեան նշանաւոր ուժեր դասախօսել...։

## III.

### ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

---

Գուգարաց աշխարհի մասին շատ բան չենք գտնում մեր դասական մատենագրութեան մէջ. այս երկիրը սկզբում յիշւում է իբրև Գուգարաց բդեշխութիւն և ապա իբրև Բագրատունեաց իշխանական կալուածք. յիշւում է նաև որպէս հանգստարան կամ գերեզմանատուն Բագրատունի թագաւորների։

Աշոտ-Ողորմած Բագրատունի արքայի անդրանիկ որդի Սմբատն երբ ժառանգում է Բագրատունեաց հարստութեան գահը՝ Անին, նրա երկրորդ որդի Աբասը ըմբոստանալով իր հօր և եղբօր դէմ՝ կազմում է Կարուց անկախ թագաւորութիւնը։ Որպէս զի կրտսեր որդի Գուրգէնն էլ իր եղբօր պէս ըմբոստանալով խռովութիւններ չյարուցանէ, Աշոտ-Ողորմածը տալիս է նրան Գուգարաց աշխարհը, ուր նա մնում է իբրև անկախ իշխան և մեռնելուց յետոյ թաղւում Սանահնի վանքում, Սուրբ Աստուածածնայ եկեղեցու երեւելեան որմի տակ-

արտաքուստ։ Այս իշխանի կամ թագաւորի մասին ուրիշ ոչինչ չեն հաղորդում մեզ պատմագիրները։

Գուրգէնին յաջորդում է իր որդի Դաւիթ Անհողինը, որ նստում է Գուգարաց աշխարհի Շամշուլդէ բերդում. սա քաջ մարդ լինելով՝ պատերազմներ է մղում, իր ձեռքն է ձգում Աղուանից աշխարհը և կոչւում է «Աղուանից թագաւոր»։ Սա ևս վախճանուելուց յետոյ թաղւում է Սանահնում, իր հօր կողքին։

Դաւիթ Անհողնին յաջորդում է իր որդի Կիւրիկէն, որ նոյնպէս Աղուանից թագաւոր է կոչւում. սա իր արքայական գահը հաստատում է Լօռուայ բերդում և մեռնելուց յետոյ թաղւում է Հաղբատի վանքում։

Թէ արդեօք Գուգարաց աշխարհի իշխանութիւնը Կիւրիկէից յետոյ ինչ վիճակ ունեցաւ, մինչև երբ մնաց իբրև անկախ իշխանութիւն, ոչինչ յայտնի չէ. մեր մատենագիրներն այնուհետև այլևս ոչինչ չեն հաղորդում այդ իշխանութեան մասին։ Յայտնի է միայն, որ մի առ ժամանակ վրաց իշխանութեան ներքոյ ընկաւ և Իւանէ ու Զաքարէ հայ իշխանների օրերով մի փոքր խաղաղ էր։ Յետոյ արդէն երևի այդ նահանգն էլ, ամբողջ Հայաստանի պէս, վայրենի ցեղերի ոտից կոխան եղաւ և աւերուեց. նոյն իսկ այժմ դեռ ևս կենդանի ծերունիների պատմելով իրենք էլ ականատես են եղել լեզգիների խմբական յարձակման, որ շարունակ աւերել, թալանել ու կողոպտել են երկիրը։

## IV.

## ՍԱՆԱՀՆԻ ՎԱՆՔԸ

Այս՝ իր ժամանակին մեծ հռչակ ունեցող վանքի հիմնարկութեան մասին տարբեր տեղեկութիւններ են հաղորդում մեր մատենագիրները. ոմանց ասելով՝ վանքը շինուել է տասներորդ դարում, Բագրատունեաց Աշոտ Ողորմածի և թագուհի Խոսրովանուշի ձեռներեցութեամբ. ոմանք էլ մե-

արտաքուստ։ Այս իշխանի կամ թագաւորի մասին ուրիշ ոչինչ չեն հաղորդում մեզ պատմագիրները։

Գուրգէնին յաջորդում է իր որդի Դաւիթ Անհողինը, որ նստում է Գուգարաց աշխարհի Շամշուլդէ բերդում. սա քաջ մարդ լինելով՝ պատերազմներ է մղում, իր ձեռքն է ձգում Աղուանից աշխարհը և կոչւում է «Աղուանից թագաւոր»։ Սա ևս վախճանուելուց յետոյ թաղւում է Սանահնում, իր հօր կողքին։

Դաւիթ Անհողինին յաջորդում է իր որդի Կիւրիկէն, որ նոյնպէս Աղուանից թագաւոր է կոչւում. սա իր արքայական գահը հաստատում է Լոռուայ բերդում և մեռնելուց յետոյ թաղւում է Հաղբատի վանքում։

Թէ արդեօք Գուգարաց աշխարհի իշխանութիւնը Կիւրիկէից յետոյ ինչ վիճակ ունեցաւ, մինչև երբ մնաց իբրև անկախ իշխանութիւն, ոչինչ յայտնի չէ. մեր մատենագիրներն այնուհետև այլևս ոչինչ չեն հաղորդում այդ իշխանութեան մասին։ Յայտնի է միայն, որ մի առ ժամանակ վրաց իշխանութեան ներքոյ ընկաւ և Իւանէ ու Զաքարէ հայ իշխանների օրերով մի փոքր խաղաղ էր։ Յետոյ արդէն երևի այդ նահանգն էլ, ամբողջ Հայաստանի պէս, վայրենի ցեղերի ոտից կոխան եղաւ և աւերուեց. նոյն իսկ այժմ դեռ ևս կենդանի ծերունիների պատմելով՝ իրենք էլ ականատես են եղել լեզգիների խմբական յարձակման, որ շարունակ աւերել, թալանել ու կողոպտել են երկիրը։

## IV.

## ՍԱՆԱՀՆԻ ՎԱՆՔԸ

---

Այս՝ իր ժամանակին մեծ հռչակ ունեցող վանքի հիմնարկութեան մասին տարբեր տեղեկութիւններ են հաղորդում մեր մատենագիրները. ոմանց ասելով՝ վանքը շինուել է տասներորդ դարում, Բագրատունեաց Աշոտ Ողորմածի և թագուհի Խոսրովանուշի ձեռներեցութեամբ. ոմանք էլ մե-

նաստանի հիմնարկութիւնը վերագրում են իններորդ դարում՝ յունաց Ռոմանոս կայսրից հալածուած մի խումբ հայ հոգևորականներին. սրանք հալածուել են Քաղկեդոնի ժողովի վճիռները չընդունելու պատճառով և գալով Սանահին՝ եկեղեցի են կառուցել և միաբանութիւն կազմելով բնակութիւն հաստատել։ Իսկ աւանդութիւնն աւելի հեռու գնալով՝ վանքի հիմնարկութիւնը կապում է առաքեալների հետ։ Առաքեալներն այստեղից անցնելիս խաչ են կանգնում, որի տեղը յետոյ Սուրբ Գրիգոր Լուսաւորիչը եկեղեցի է շինում։ Վանքի բուն պատմական շրջանն սկսւում է Բագրատունեաց Սմբատ Բ. արքայի օրով։ Այս եկեղեցասէր արքան գալով Սանահին՝ եպիսկոպոսական վիճակ է հաստատում և վանքին տալիս է կալուածքներ ու ընդարձակ եպիսկոպոսական թեմ, որ մի կողմից ձգւում էր մինչև վրաց սահմանները, իսկ միւս կողմից մինչև Այրարատի Նիգ և Շիրակ գաւառները։

Այդ ընդարձակ կալուածքները վանքի սեպհականութիւնն են մնում նոյն իսկ վրաց իշխանութեան ներքոյ, Բագրատունեաց թագաւորութեան անկումից յետոյ. վրաց արքաները հրովարտակներով հաստատում են վանքի սեպհական կալուածքները։ Վրաց իշխանութեան հովանաւորութիւնը մեր վանքերի վերաբերմամբ առաւել ևս զօրեղանում է Իւանէ և Զաքարէ սպասալար հայազն զօրավարների ժամանակ, որոնք վրաց տէրութեան սահմաններն ընդարձակելով մինչև Պարսկաստան, չեն մոռանում իրենց հայրենիքին էլ օգտակար լինել. նրանք հին վանքերը նորոգում, ապահովում են և նորերը շինել տալիս ամեն տեղ, մանաւանդ Գուգարաց աշխարհում, ուր և գտնւում են նրանց դամբարանները։ Սպասալարների աճիւնը թաղուած է Սանահնում և վրան մատուռ է կառուցուած։

Ահա այդ երկու շրջաններումն է ծաղկում Սանահնի վանքը. այստեղ են հաւաքւում եկեղեցու գիտնական պաշտօնեաները և հարուստ մատենադարան ու ճեմարան հաստատւում։ Այնուհետև զանազան բարբարոս ազգեր արշաւելով Հայաստան և Գուգարք՝ քարուքանդ են անում ամեն բան

և նոյնպէս կողոպտում Սանահնի հարստութիւնն ու միաբաններին ցրւում. վանքը կորցնելով իր կալուածքները՝ մնում է անտէր և եթէ՝ այսօր կանգուն է մնացել այդ հոյակապ շէնքերի խումբը, այդ էլ իր դիրքի շնորհիւ է եղել։ Տասնևութերորդ դարու վերջերին Արղութեանց իշխանական տոհմը տիրելով վանքի նախկին կալուածքները, երբեմն երբեմն ուշադրութիւն դարձրեց վանքի վրայ և նորոգել տուեց միքանի եկեղեցիների վնասուած տանիքները։

## V.

## ՎԱՆՔԻ ՄԱՍԵՐԸ

Սանահնի վանքի բաղկացուցիչ մասերն են. 1) Սուրբ Աստուածածին, 2) Ամենափրկիչ, 3) Սբ. Գրիգոր և 4) Սբ. Յարութեան եկեղեցիները, երկու գաւիթները, զանգակատունը, մատենադարանը, ճեմարանը և մի մատուռ։ Բացի սրանցից կան և երկու բլուրների վրայ կառուցուած 1) Սբ. Սարգիս և 2) Սբ. Կարապետ եկեղեցիները։ Մանրամասն նկարագրենք սրանց այժմեան դրութիւնը. սկսենք գաւիթներից։

### 1

### ՆԱԽԱԳԱՒԻԹ

Ինչպէս քրիստոնէութեան սկզբի դարերում կառուցուած բոլոր վանքերն ու եկեղեցիները, այնպէս էլ Սանահնի վանքի մեծ եկեղեցիները ունին *գաւիթ:* Քրիստոնէութեան նախնական դարերում գաւթումն էին կանգնում «երեխայ»-ները, այսինքն դեռ չմկրտուած հասակաւորները և հեթանոսները. նոյնպէս և թերահաւատներն ու ապաշխարողները. դրանք դուրս էին գալիս եկեղեցուց, երբ սարկաւագը բեմից երգում էր. «Որք ոչ էք կարող հաղորդել յԱստուածային խորհուրդս, առ դրունս ելէք և աղօթեցէք», որովհետև «մի ոք

և նոյնպէս կողոպտում Սանահնի հարստութիւնն ու միաբաններին ցրւում. վանքը կորցնելով իր կալուածքները՝ մնում է անտէր և եթէ՝ այսօր կանգուն է մնացել այդ հոյակապ շէնքերի խումբը, այդ էլ իր դիրքի շնորհիւ է եղել։ Տասնևութերորդ դարու վերջերին Արղութեանց իշխանական տոհմը տիրելով վանքի նախկին կալուածքները, երբեմն երբեմն ուշադրութիւն դարձրեց վանքի վրայ և նորոգել տուեց մի քանի եկեղեցիների վնասուած տանիքները։

## V.

## ՎԱՆՔԻ ՄԱՍԵՐԸ

Սանահնի վանքի բաղկացուցիչ մասերն են. 1) Սուրբ Աստուածածին, 2) Ամենափրկիչ, 3) Սբ. Գրիգոր և 4) Սբ. Յարութեան եկեղեցիները, երկու գաւիթները, զանգակատունը, մատենադարանը, ճեմարանը և մի մատուռ։ Բացի սրանցից կան և երկու բլուրների վրայ կառուցուած 1) Սբ. Սարգիս և 2) Սբ. Կարապետ եկեղեցիները։ Մանրամասն նկարագրենք սրանց այժմեան դրութիւնը. սկսենք գաւիթներից։

### 1

### ՆԱԽԱԳԱՒԻԹ

Ինչպէս քրիստոնէութեան սկզբի դարերում կառուցուած բոլոր վանքերն ու եկեղեցիները, այնպէս էլ Սանահնի վանքի մեծ եկեղեցիները ունէին *գաւիթ*: Քրիստոնէութեան նախնական դարերում գաւթումն էին կանգնում «երեխայ»-ները, այսինքն դեռ չմկրտուած հասակաւորները և հեթանոսները. նոյնպէս և թերահաւատներն ու ապաշխարողները. դրանք դուրս էին գալիս եկեղեցուց, երբ սարկաւագը բեմից երգում էր. «Որք ոչ էք կարող հաղորդել յԱստուածային խորհուրդս, առ դրունս ելէք և աղօթեցէք», որովհետև «մի ոք

չերեխայից և մի ոք յապաշխարողաց մերձեսցի...»: Գաւիթները առ հասարակ ընդարձակ լինելով՝ ծառայում էին, նախնական ժամանակներում, նաև իբրև ընդհանուր սեղանատուն բոլոր հաւատացեալների համար, որովհետև վանքերը նաև բարեգործական ու մարդասիրական հաստատութիւններ լինելով՝ կերակրում էին ժողովրդի աղքատ դասակարգին, դարմանում էին հիւանդներին, խնամում էին այրիներին ու որբերին և դրանց զաւակներին ուսում տալիս:

Գաւթում էին թաղւում նոյնպէս նշանաւոր եկեղեցականների ու աշխարհականների երկրային մնացորդները:

Սանահնի վանքի գաւիթը բաղկացած է երկու մասից՝ նախագաւթից և աւագ գաւթից. առաջինը գտնւում է սբ. Աստուածածին եկեղեցու առաջ, իսկ երկրորդը Ամենափրկիչ եկեղեցու առաջ:

Նախագաւթի դռնից—որ գտնւում է նրա արևելա-հիւսիսային անկիւնում—ներս մտնելով՝ մեր աչքի առաջ պատկերանում է մի ընդարձակ խորանազարդ շինութիւն՝ կերտւած միատեսակ սրբատաշ քարերից: Նախագաւիթն ուշի ուշով դիտելուց յետոյ՝ իսկոյն աչքի է ընկնում, որ նա եկեղեցու հետ միասին չէ կառուցւած, այլ աւելի ուշ: Նախագաւիթը շինուել է Իւանէ և Զաքարէ սպասալարների ժամանակ, 13-րդ դարում, Վաչէ Սարգսեան զօրավարի ձեռքով: Եւ երբ հայեացքդ գցում ես նախագաւթի հիւսիսային պատի վրայ, իսկոյն հաստատւում է արանդ ենթադրութիւնը՝ կարդալով հետևեալ արձանագրութիւնը.

«Ես Վաչէ ծառայ Զաքարիայի որդի Սարգսի շինեցի զխորանս և եդու զիմ ոսկետուփ աւետարանն և զսուրբ Նշանն և զգործքս մեծածախիւք ի սուրբ Աստուածածինս առաջնորդք սուրբ ուխտիս Հայր Վարդան և վարդապետս Գրիգոր միաբանօքս հաստատեցաք ի տարւոջն զսուրբ Գէորգին զշաբաթն և զկիրակէն զամեն եկեղեցիս պատարագ ի կենդանութեան մեր ծնողացն և յետ մահուան մեր մին աւրն ինձ Վաչէի և մինն ամուսնոյ իմ Մամախաթունէն, ով խափանէ մեր խղճիս տէր է առաջի Աստուծոյ:

Այս արձանագրութիւնից մի փոքր ցած գրուած է.

«Յանուն Աստուծոյ ես Վաչէ որդի Վաչուտին ետու զիմ գրամագին Բաղալէ այգին ի չէն գաւթի Սանահնի սբ. Աստուածածնիս և առաջնորդ սորա Յովհաննէս և միաբանքըս հաստատեցին զՓիլիպոսի առաքելոյ տաւնի պատարագ զամէն եկեղեցեքս Դաւթի և եղբօրն անխափան մինչև ի գալուստն Քրիստոսի և որ խափանել ջանայ պարտական է մեր խղճիս առաջի Աստուծոյ»։

Ամբողջ գաւթի երկարութիւնն է 23 արշին, լայնութիւնը 18 արշին և 14 վերշոկ, բարձրութիւնը 9 արշին 6 վերշոկ. բաղկացած է երեք կամարաձև շինուած խորաններից, որոնք հիւսիսային կողմից հետզհետէ փոքրանում են. որովհետև առաջին խորանի լայնութիւնն է (հիւսիսից-հարաւ) 7 արշին 4 վերշ. երկրորդ խորանինը առաջինից աւելի փոքր է, այն է 6 արշ. 6 վ. և վերջապէս երրորդն աւելի փոքր երկրորդից՝ այն է 5 արշ. 11 վերշ.։

Խորանները միմեանցից բաժանուած են չորս-չորս կամարներով. կամարներից իւրաքանչիւր երկու սիւների միջի տարածութիւնն է 3 արշ. 3 վ. իսկ կամարների բարձրութիւնն է 4 արշ. 3 վ.։ Միջին երկու կամարների վեց սիւներն ազատ են և իրենց ուսերի վրայ կրում են ամբողջ շինութիւնը. մնացած սիւները, թւով 16 հատ, գտնւում են որմերի մէջ։ Այդպիսով ուրեմն ամբողջ նախագաւիթը կանգնած է 22 սիւների վրայ։ Այդ սիւները բոլորն էլ միևնոյն ձևի չեն. օրինակ առաջին խորանի 3 ազատ սիւների միջին մասը գլանաձև է, իսկ մնացած 3 ազատ սիւները՝ վեցանիստ պրիզմայի ձևով։ Նոյնը կարելի է ասել և սիւների ներքնախարիսխների և վերնախարիսխների վերաբերութեամբ. նրանք միմեանցից զանազանւում են թէ ձևով և թէ մեծութեամբ. միքանիսը քանդակագործուած են, միւսներն անքանդակ. եղած քանդակներն էլ միանման չեն, այլ զանազան։ Սիւները բաղկացած են ընդհանրապէս երեք ամբողջ մասերից և ունին մօտաւորապէս մի սաժէն շրջապատ. հաստատուած են պատուանդանների վրայ, որոնք

քառակուսի ձև ունին և ամբողջ քարից են շինուած—ամեն մի կողմը 1 արշ. և 6 վ. է։

Արևելեան կողմից նախագաւիթը կպած է սբ. Աստուածածին եկեղեցուն, որի դուռը բացւում է միջին խորանի մէջ։ Դրան մօտ աՀագին քարեայ պատուանդանի վրայ գտնւում է մի խաչքար՝ կարմիր քարից շինուած և Հրաշալի քանդակագործութեամբ։ Խաչքարը կրում է Հետևեալ արձանագրութիւնը. «Ես Դաւիթ իշխանաց իշխան կանգնեցի զսուրբ նշան գերեզմանի Հաւր իմոյ Գրիգորի, որք երկրպագէք յաղաւթս յիշէք *)»։ Նոյն կողմից սբ. Աստուածածին եկեղեցուն կից գտնւում է Մագիստրոսի ճեմարան կոչուած կամարակապ խորանը։ Հարաւային կողմի որմի միջին կամարի մէջ գտնւում է մի աՀագին դուռը, որ բացւում է դէպի Ամենափրկիչ եկեղեցու գաւիթը։ Նոյն մեծ կամարի երկու կողմերը գտնւում են ուրիշ փոքրիկ կամարներ, որոնց լայնութիւնն է 1 արշ., բարձրութիւնը 2 արշ. արևմտեան կողմից վերջանում է վեց կամարներով. այդ կամարները սկզբում ազատ են եղել, բայց այժմ լցուած են որմերով - երկու ծայրերինը ամբողջովին, իսկ մնացածները՝ մինչև սիւների վերջին ծայրը։

Այդ կամարները լցրել են... **) որպէս զի կենդանիները ներս չմտնեն (փոխանակ դրսի կիսաւեր պարիսպը նորոգելու)։

Նախագաւթի վերոյիշեալ կամարների երկու ծայրի կամարների մէջ կանգնեցրած են մի մի աՀագին խաչքարեր՝ սև քարից շինած պատուանդաններով. իսկ խաչը կարմիր քարից և սքանչելի քանդակագործութեամբ, ինչպէս որ գաւթի ներսը գտնուած խաչքարը։ Այդ խաչքարերի երես-

---

*) Խաչքարի բարձրութիւնն է 3 արշին $2\frac{1}{2}$ վերշ. ներքևի լայնութիւնը 1 արշ. $6\frac{1}{2}$ վերշ. իսկ վերևի լայնութիւնը 1 արշ. 8 վերշ.։

**) Այս երկու լցուած կամարները մի խաչարձանով զետեղուած են հայր Ալիշանի «Այրարատ»-ի 176 երեսի վրայ և սխալմամբ կամ թիւրիմացութեամբ տակը գրուած է. «6. Խաչարձան Սարգսի (?) ի Յովհաննա-վանս»։

ները դէպի դուրս են նայում· երկուսն էլ նոյն ձեւով են շինուած, սակայն նկարները տարբեր են։ Այդ երկու խաչքարերից միայն մէկը, հարաւային պատի կողմն եղողը, երկրորդ երեսի վրայ (գաւթի կողմը) կրում է ՈԿԴ (664 թ. հայոց և 1215 փրկչական) թուին գրուած հետեւեալ արձանագրութիւնը·

«Կանգնեցաւ խաչս յիշատակ որդւոյ Սմբատայ Թոռն Համազասպեանց, որ մեռաւ ի պատերազմի և թաղեցաւ ի դուռն Աստուածածնի և որդի նորա Սմբատ և ամուսին Աղուտ ետուն ի Մղարտն Զաքլասադանց հայրենիքն ամենայն շահու զենով յԱստուածածին և խ. օրավար հող ով զայն հանէ յԱստուածածնէս դ. սբ. ժողովոցն նզովեսցի յԱստուծոյ։ Ես հայր և վարդապետ Գրիգոր, Վարդան և ամէն միաբանքս տուաք զամէն եկեղեցիքս քառասնից տաւնին զերկու եկեղեցին Սմբատայ և զայլն Սարգսի։ Ով խափանէ զվերոգրեալ նզովսն առցէն»։

Երկրորդ խաչքարն, արտաքին կողմից, ճակատին կրում է հետեւեալը·

«Նշանդ Աստուծոյ աւգնեա Քրդի Խորիշահի և...»։

Նախագաւթի կամարներից և սիւներից շատերը ծածկուած են արձանագրութիւններով· դրանց պարունակութիւնը գլխաւորապէս այն է, որ այս ինչ իշխանը կամ իշխանուհին կամ այս ինչ մարդը կամ կինը նուիրել է վանքին այգի, ձիթահանք, վարելահող, կամ եկեղեցական սպասներ· իսկ վանքի միաբանութիւնը դրա փոխարէն պարտաւորուել է այս կամ այն տօնին պատարագ մատուցանել նուիրատուների կամ նրանց ծնողաց և ամուսինների հոգւոյ փրկութեան և որդոց արեւշատութեան համար։ Նուիրատուներից շատերի աճիւններն էլ ամփոփուած են նոյն նախագաւթում։

Նախագաւթի յատակը ծածկուած է մեծ ու փոքր գերեզմանաքարերով, որոնցից պարզ որոշւում են մօտ հարիւր տասը հատ՝ մի մասը արձանագրուած, միւս մասն առանց արձանագրութեան· արձանագրուածները մեծ մասամբ այն իշխանների անուններն են կրում, որոնք ծառայութիւն են

մատուցել վանքին զանազան նուէրներով և շէնքեր կառուցանելով, ինչպէս օրինակ. Համազասպ, Քուրդ իշխան, Վաչէ Այավկեցի, Գրիգոր Վահրամեանց, Գրիգոր մագիստրոսի պապ, Վասակ Կուճի և այլն։

Նախագաւթի արևմտեան որմի կամարների վրայ՝ իւրաքանչիւր խորանի մէջ բացւում է մի մի լուսամուտ։

Նախագաւթի մէջ այժմ սաստիկ խոնաւութիւն է տիրում. պատերից շատերը խախտուել են. կտուրը ծածկուած է ծառաչափ խոտերով և այդ պատճառով անձրևի ջուրը ցած իջնելով՝ սիւների և որմերի վերին մասերը շարունակ թաց ու խոնաւ են. ներսն էլ անմաքրութիւն է տիրում։

## 2.

## ԳԱՒԻԹ

Նախագաւթի հարաւային որմի միջին մեծ կամարի մէջ է գտնւում գաւթի կամ աւագ գաւթի դուռը՝ մաքուր, յղկկած քարերից շինուած։ Դրան բոլորքը գտնւում են գեղեցիկ քանդակներ, որոնց մի մասը—Նախագաւթի շինութիւնից յետոյ—մնացել է Նախագաւթի հարաւային որմի մեծ կամարի տակ։ Դրան ճակատին փորագրուած է հետևեալ արձանագրութիւնը.

«Ի թագաւորութեան վրաց Գէորգէի յամիր սպասալարութեան Զաքարայի և Իւանայի եղբաւր իւրոյ ի թուին ոխ (640 հ. թ. և 1191 թ. փրկչ.) ես Քուրդս, Հասան, Համազասպ, Սարգիս որդիք Սմբատայ, որդւոյ Համազասպ մարզպանի տուաք զԹշա կէսն ի մեր հայրենեաց ի մեր հողոտայքս ի Սանահին մեր մեռելոց հոգոյն և մեր արևշատութեան ընկալաք հայրս Յովհաննէս և եղբարքս և գրեցաք զհամբարձում աւրս զամէն եկեղեցիքն Աստուածածնայ մինչ ուխտս ի հաստատութիւն է, զաւր հացն ի նոցա անուն զսեղանիս մի ոք խափանեսցէ»։

Մտնելով այդ հոյակապ դռնից, որի բարձրութիւնն 3 արշ. 6 վ., լայնութիւնն 2 արշ. $6^1/_2$ վ. է, դուք կտեսնէք

մի հոյակապ, վիմարդեայ կամարակապ շինութիւն, որ իր վեհութեամբ և ճարտարապետութեամբ գերազանցում է նախագաւթին։ Սա նախագաւթի պէս խորաններից չէ բաղկացած, այլ չորս հոյակապ կամարներից՝ հաստատուած նոյն թուով հաստահեղոյս սիւների վրայ, որոնք իբրև մի մի հսկաներ՝ իրենց ուսերի վրայ են կրում ամբողջ շէնքը։

Չորս մեծ կամարները, որոնցից իւրաքանչիւրի բարձրութիւնն է 9 արշ., լայնութիւնը 7 արշ. 12 վ. միանալով միմեանց հետ՝ կազմում են գաւթի մէջ 4 անկիւններ փոքրիկ կամարներով, որոնց բարձրութիւնն է 6 արշ. 8 վ. իսկ կամարների սիւների մէջ եղած տարածութիւնն է 3 արշ. 6 վ.։ Վերին կողմում այդ չորս կամարները միանում են մի ուրիշ մանեկաձև կամարագօտու հետ, որի վրայ հաստատուած է գաւթի կաթողիկէի նման ընդարձակ գմբէթը։ Գմբէթի վերին մասը բաց է և ունի համարեա թէ նոյնքան մեծութիւն, որքան մեծ կամարների բարձրութիւնն է՝ եթէ հաշուենք գաւթի բարձրութիւնը 18 արշ. 3 վ.։

Չորս ահագին սիւները, որոնց վրայ կանգնած են կամարները և որոնք 4 արշ. 13 վ. բարձրութիւն ունին, բաղկացած են ընդամենը 3 հատ քարերից, այն է՝ սեան վերնախարսխից և ներքնախարսխից, որոնց հաստ մասի շրջագիծն է 4 արշ. 13 վ. և սեան միջին մասից, որի շրջագիծն է $3^1/_2$ արշին։ Ներքնախարիսխը կամ պատուանդանը քառակուսի ձև ունի՝ վրայի մասը կլոր, դուրս ցցուած փորով. վերնախարիսխը նոյնպէս պատուանդանի ձև ունի, միայն թէ կլոր և դուրս ցցուած մասը դէպի ներքև է ուղղուած։ Մարդ հիացմամբ է դիտում այդ միակտուր քարից շինուած սիւները, գեղեցիկ քանդակներով զարդարուած խարիսխները և անկիւններում քանդակուած սափորները, կճուճները, վագրի, առիւծի, եզան, այծի գլուխները և այլն. Նոյնպէս բնական ու գեղեցիկ են երևում սեան պատուանդանի չորս անկիւններում քանդակուած ահագին մեխերը։

Ո՜րքան աշխատանք, ո՛րքան ջանք են թափել մեր նախնիքն այդպիսի ահագին քարեր կրելով դժուարագնաց

ճանապարհներով. որքան համբերութիւն՝ պարզ և հասարակ գործիքներով այդպիսի հիանալի քանդակներ փորելու երկաթէ ամրութիւն ունեցող լերկ քարի վրայ. այդ կարող էր անել միայն հաւատը, անկեղծ, անխարդախ և մաքուր սրտից բղխած հաւատը...։

Վերոյիշեալ չորս սիւները, ինչպէս երեւում է սիւների վրայի արձանագրութիւններից, շինել են Կիւրիկէ թագաւորի երեք դուստրները՝ Մարիամ, Բորինայ և Ռուսուդնան ու Թամար *) Ռուսուդնան—իւրաքանչիւրը մի մի սիւն։

Գաւթի մուտքից աջ կողմը, հարաւային սիւնի վրայ արձանագրուած է.

«Ես Ռուսուդնայ հօրաքոյր Թամար մայր թագուհեաց և զսիւնս կանգնեցաք զմեզ յիշեցէք ի Քրիստոս»։

Գաւթի մուտքից ձախ կողմն եղող սիւնի վրայ գրուած է.

«Ես Մարիամ Բագրատունի դուստր արքային Կիւրիկէի, մեծաւ յուսով կանգնեցի զսիւնս զայս և ետու զիմ հայրենի սուրբ Նշանն մեծածախ պահարանով ի սուրբ Աստուածածինս սկեան արծաթի և տանացուցակ պարտական են զ. քառասունքս եղբայր ա. ժամ. և զկնի վախճանի իմոյ զնաւակատիսն աւրն և զվարդեւարն ինձ պատարագել մինչև ի կատարած աշխարհի, որ խափանէ նզովուած է յԱստուծոյ և ամենայն սրբոց. ամէն»։

Գաւթի մուտքի աջ կողմը գտնուող սիւնի վրայ արձանագրուած է.

«Ես Ըռուսուդնայ նմին արքայի դուստր քոյր Մարիամայ կանգնեցի զսիւնս լինել ինձ սիւն լուսոյ ի կեանս յաւիտենից»։

Չորրորդ սիւնը հետևեալ արձանագրութիւնն է կրում.

«Ես Բաւրինայ նոյն արքայի դուստր քոյր Մարիամու կանգնեցի զսիւնս զայս և զիս յիշեցէք ի Քրիստոս»։

---

*) Թագուհու հօրաքոյրը։

Իսկ եկեղեցու դրան ճակատին արձանագրուած է.

«Ի թուին Հայոց ՈԼ (630—1181 փրկչ.) ի ժամանակս յաղթաւղ թագաւորին Գէորգեայ և յամիրի սպասալարութեան Սարգսի և որդւոց իւրոց Զաքարէի և Իւանէի և յամիրութեան Քրդին. ես Յովհաննէս առաջնորդ սուրբ ուխտիս շինեցի զերբեմն լեալ զեկեղեցիքս աւգնութեամբ ամիր Քրդին ևս վարդապետի մեծի Գրիգորի Քս Այ և զգաւիթս ի հիմանց մեծաւ յուսով. զաշխատակից զեղբայրս և զհայր Յովհաննէս զարժանին յամենայն աւրհնութեան զի յաւուրս սոցա կրկին ազատեցան եկեղեցիք մեր յամենայն հարկէ յիշեցէք ի Քս.» *)։

Ինչպէս այս արձանագրութիւնից պարզ երևում է՝ Ամենափրկիչ եկեղեցին գաւթից առաջ է շինուած եղել. Յովհաննէս առաջնորդը եկեղեցին նորոգել է և գաւիթն ի հիմանց շինել 1181 թուին։ Եւ իրաւ, եթէ լաւ զննելու լինենք շինութիւնը, իսկոյն նկատելի կլինի, որ գաւիթը եկեղեցու հետ միաժամանակ չէ շինուած, այլ յետոյ։

Արևելեան որմի վրայ գտնւում է Ամենափրկիչ եկեղեցու դուռը, որի շուրջը զարդարուած է գեղեցիկ քանդակներով և երեք կարգ սիւնազարդ կամարներով. դրան երկու կողմը գտնւում են երկու փոքրիկ կամարներ։

Նոյն պատի վրայ, անկիւնների փոքր կամարների տակ գտնւում են մի մի փոքրիկ լուսամուտներ, որոնք բացւում են ուղղակի եկեղեցու մէջ և որովհետև գաւիթը յետոյ է աւելացրած՝ այդ պատճառով այդ լուսանցքներն ուղիղ կամարի տակ, մէջտեղը չեն գտնւում։

Արևմտեան և հարաւային որմերի մեծ կամարների մէջ ևս գտնւում են լուսանցքներ. վերջինիս վրայ, փոքրիկ կամարների տակ, գտնւում են մի մի փոքրիկ լուսանցքներ. երկուսն էլ հիւսիսային որմի մէջ, որոնք բացւում են դէպի սբ. Աստուածածնայ գաւիթը կամ ինչպէս մենք անուանեցինք՝ Նախագաւիթը։

*) Այս արձանագրութիւնը մեծ դժուարութեամբ կարդացուեց. Սարգիս եպ. Ջալալեանը հազիւ մի հատուած է կարդացել։

Հարաւային պատի մէջ եղել է և մի մուտք, որ բացուելիս է եղել դէպի դուրս, բայց յետոյ փակուել է—ինչպէս երևում է շատ վաղուց, որովհետև այժմ դուրսն այնքան հող է լցուած, որ դրան մեծ մասը ծածկուել է։

Գմբէթի ճիշդ բացուածքի տակը, յատակի վրայ կայ մի մեծ փոս քար՝ անձրևի ջրի համար։ Յատակը ծածկուած է գերեզմանաքարերով, որոնց թիւը 74-ի է հասնում և որոնց մէջ գտնւում է նաև գաւիթը շինող Յովհաննէս առաջնորդի գերեզմանը - եկեղեցու մուտքի առաջը.— իսկ գաւթի հարաւային որմի մօտ, սիւնի առաջն է գտնւում Դաղստանը նուաճող զօրավարներից մէկի, Մովսէս Արղութեանցի գերեզմանը, որի վրայ տարածուած ահագին գերեզմանաքարի մարմարը հետևեալ տողերն է կրում.

«Աստ ամփոփի մարմին քաջ սպարապետի Հայոց գեներալ ադիւտանտ կնեազ Մովսիսի Զաքարեան երկայնաբազուկ-Արղութեանց. ծնեալ ի 1798 և վախճանեալ ի 1855 ամի»։ —Այս հայ զօրավարի արձանը կանգնած է Թէմիրխանշուրայում։

Գաւթի այժմեան դրութիւնը թէև նախագաւթից աւելի լաւ վիճակի մէջ է, բայց այնուամենայնիւ անխնամ թողնուած լինելու հետքերն այստեղ ևս նկատելի են. արդէն սկսել են որմերի արանքներում խոտե՛ր երևալ։

3.

## ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ

Սուրբ Աստուածածնայ եկեղեցու շէնքը զանազանւում է վանքի միւս մասերից թէ իր ձևով և թէ հնութեամբ. անվիճելի կարելի է համարել, որ սա աւելի վաղ է կառուցուել, քան Ամենափրկիչն ու գաւիթները։ Հաւանական է, որ այս եկեղեցին շինած լինեն մեր պատմագիրների յիշած և յունաց Ռոմանոս կայսրից հալածուած հայ վարդապետները, իսկ Ամենափրկիչը՝ Աշոտ Ողորմած Բագրատունի արքան։

Եկեղեցին թէ ներսից և թէ դրսից սիրուն է և համա-

չափ՝ նա մանաւանդ կաթողիկէն. քարերն այնքան էլ մաքուր և սրբատաշ չեն։

Նախագաւթի արևելեան դռնից մտնելով՝ անմիջապէս գտնւում էք անսիւն և կամարակապ սրբավայրում. 2 սաժէն լայնութիւն ունեցող չորս համաչափ կամարագօտիները միանում են մի մանեկաձև կամարով, որի վրայ կանգնած է չորս երկարաձև լուսամուտներով ու երկաթէ խաչով զարդարուած կաթողիկէն։

Կամարների տակ գտնւում են մի մի լուսամուտ, իսկ նրանց միացման տեղերում քանդակուած են չորս աւետարանիչների քարեայ կենդանակերպերը։ Պատերի վրայ երեւում են սրուածքի հետքեր. ո՛չ մի արձանագրութիւն չկայ, միայն տեղ տեղ սրուածքի վրայ երևում են կարմիր գեղով գրուածքների հետքեր։

Ցատակից մի արշին 6 վերշ. բարձր է շինուած բեմը՝ քանդակուած փայտեայ սեղանով, որի վրայ գտնւում են նոյն փայտից շինուած երեք հատ փոքրիկ գմբէթներ, իսկ երրորդը վայր է ընկել։ Սեղանին գեղեցկութիւն են տալիս դռների՝ երկու առաքելո՛ց պատկերները—Թադէոսի և Բարգուղիմէոսի. առաջինը ձեռքին աւետարան ունի բռնած, իսկ երկրորդը սբ. Աստուածածնայ պատկերը։ Խաչկալն ու պատկերները նոր են և Արղութեան իշխանների նուէր, ինչպէս երևում է նրանց մակագրութիւններից։

Բեմի աջ և ձախ կողմը գտնւում են երկու պատարագամատոյց խորաններ. ձախ խորանի պատարագամատոյց սեղանը վերցրած է, իսկ աջ խորանի սեղանի միայն տակի սիւնն է մնացել. իւրաքանչիւր խորանի մէջ մի լուսամուտ կայ։

Ձախ կողմի խորանի մուտքի վրայ եղած երկու միապաղաղ քարեայ սիւների վրայ գտնւում է այս եկեղեցու քարից շինած փոքրիկ կաղապարը, որի մէջ նստեցրած է սբ. Աստուածածնայ պատկերը։ Վերջին ժամանակներն այդ կերտուածը գաճով սրած լինելով՝ կորցրել է իր նախկին գեղեցկութիւնը։

Բացի այդ երկու գլխաւոր խորաններից՝ կան և երկու ուրիշ խորաններ եկեղեցու մուտքի (գաւթից) երկու կողմը. երկուսն էլ պատարագամատոյց սեղաններ ունէին, որոնք անխախտ են մնացել։ Այդ խորանների մէջ աճած էին հին խաչկալի փայտի կտորներ և մի գեղեցիկ, սպիտակ մարմարիոնից կոփած տաշտ և մի ուրիշ առարկայ, որ նման է մեծ հայելու և նոյնպէս սիրուն քանդակներ ունի։ Այս առարկաները նոր ժամանակի շէնք են երևում և վանահօր ասելով՝ բերուած են Երզրումից։

Եկեղեցին երկու մուտք ունի, մէկն ինչպէս յիշեցինք՝ արևմտեան պատի մէջ, իսկ միւսը հիւսիսային։ Որովհետև եկեղեցին գաւթից աւելի վաղ է շինուել, այդ պատճառով սկզբում դուռը բացուելիս է եղել դէպի բակը, իսկ այժմ բացւում է դէպի գաւիթը։ Եկեղեցու կամարների տակ գտնուած պատուհաններից մէկը բացւում է այժմ Ամենափրկիչ եկեղեցու մէջ, որ նոյնպէս ապացոյց է վերջինիս աւելի ուշ կառուցուելուն։

Եկեղեցու երկարութիւնը 15 արշին 12 վ. է, լայնութիւնը 12 արշ. $2^{1}/_{2}$ վ., իսկ արևմտեան դռնից մինչև բեմի դուռը 10 արշ. 14 վ.։ Միայն սեղանի լայնութիւնն է 5 արշ. 12 վ., իսկ երկարութիւնը հարաւից-հիւսիս 6 արշ., բարձրութիւնը 1 արշ. 6 վ.։ Մէկ մուտքի (գաւթից) բարձրութիւնն է 3 արշ. 6 վ., լայնութիւնը 1 արշ. 7 վ.։ Դէպի դուրս բացուող դրան բարձրութիւնն է 3 արշ. $1^{1}/_{2}$ վ., լայնութիւնը 1 արշ. 6 վ.։

Չորս խորաններն էլ հաւասար մեծութիւն ունեն. 3 արշ. 6 վ. երկարութիւն, 1 արշ. 9 վ. լայնութիւն, 5 արշ. բարձրութիւն։ Արևմտեան խորանների դռների բարձրութիւնն է 2 արշ. 13 վ. լայնութիւնը 1 արշ.։

Կաթողիկէի բարձրութիւնն է 19 արշին։ Յատակը ծածկուած է սրբատաշ քարերով և ոչ մի գերեզմանաքար չկայ. եկեղեցին անշուք և պատերը մի քանի տեղ ճեղքուած են։

## 4.

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ԵԿԵՂԵՑԻՆ

Ամենափրկիչ հրաշափառ եկեղեցին կառուցուել է 961 թուին Բագրատունեաց Աշոտ Ողորմած արքայի և իր կին Խոսրովանոյշի հոգացողութեամբ։ 1184 թ. նորոգում է Յովհաննէս եպիսկոպոսը՝ Գրիգոր Տուտէորդի հռչակաւոր վարդապետի օգնութեամբ, ինչպէս որ պարզ երևում է եկեղեցու մուտքի ճակատին եղած և արդէն առաջ բերուած արձանագրութիւնից. «..Ես Յովհաննէս առաջնորդ սուրբ ուխտիս շինեցի *զնորընմն լեալ զնկնողեցին*..»։

Ամենափրկչի դուռը գտնւում է գաւթի արևելեան որմի մեծ կամարի տակ՝ երեք կարգ սիւնազարդ կամարներով. իւրաքանչիւր երեք սիւնը քանդակուած է մի ամբողջ քարից։ Դրան շուրջը զարդարուած է գեղեցիկ քանդակներով. բարձրութիւնն է 3 արշ. $5^1/_2$ վ., լայնութիւնը 2 արշ. $1^1/_2$ վ.։ Այս դուռը Սանահնի վանքի ամենաշքեղ կերտուածն է. բաղկացած է չորս մեծ ու լայն կամարներից, որոնք դէպի ցած գալով՝ հետզհետէ փոքրանում են. կամարները շինուած են միապաղաղ և սրբատաշ քարերից։ Ամենամեծ կամարի մէջտեղը, միևնոյն քարից քանդակուած է մի կենդանու գլուխ. կամարները կանգնեցրած են երկու սիւների վրայ, որոնք երեք մասից են բաղկացած և երեքն էլ զանազան ձևեր են ներկայացնում. վերին մասը փոքր քառակուսի ձևերի խումբ է՝ մանր քանդակներով. մէջ տեղինը, որի բարձրութիւնը մօտ $2^1/_2$ արշ. է՝ կերտուած է հաստ ու բարակ սիւնաձևերով. ստորին մասը եռանկիւնի միաչափ ձևերի խումբ է։ Դրան ճակատին դրուած է մի մեծ կիսաշրջանաձև քանդակազարդ քար, որ այժմ մէջտեղից ճեղքուած է։ Այժմեան դուռը հասարակ փայտից է շինած և կողպէքով փակած։ Վերոյիշեալ արձանագրութիւնը գրուած է երեք մեծ կամարների վրայ. ամենամեծի վրայ 2 տող, միւս երկուսի վրայ էլ մէկ մէկ տող. տառերը բոլորաձև են և բաւականին խոշոր։

Դռնից ներս մտնելով՝ տեսնում էք փառաւոր և ընդարձակ եկեղեցին, որ աչքի է ընկնում իր պարզութեամբ ու գեղեցկութեամբ։ Սրբատաշ քարից շինուած այդ հրաշալի կերտուածը հաստատուած է չորս կամարների վրայ՝ առանց սիւների։ Չորս կամարները կրում են իրենց վրայ մի մանեկաձև կամարագօտի, որի վրայ կանգնած է ահագին գմբէթը՝ չորս ընդարձակ լուսամուտներով։ Թէ կամարների և թէ ամբողջ եկեղեցու քարերը մնացել են անփուլթ. պատերի վրայ երևում են սրուածքի հետքեր, որոնց վրայ կարմիր գեղով գրուած են եղել սաղմոսներ, որոնք ջնջուել են և միայն մի քանի բառեր են մնում։ Գմբէթի վրայ, ներսից գտնւում են նոյնպէս սրուածք և նկարների հետքեր, որոնք եղծուել են անձրևի կաթելուց։

Եկեղեցին ունի ութը խորաններ. երկու հատ երկյարկանի խորաններ՝ եկեղեցու մուտքի աջ ու ձախ կողմը և նոյնպիսի երկյարկ խորաններ՝ բեմի աջ ու ձախ կողմը։ Մուտքի աջ կողմի խորանի մէջ գտնւում է մի պատարագամատոյց սեղան, իսկ արևմտեան պատի կողմը, առաստաղի վրայ գտնւում է մի անցք, որ միակ ճանապարհն է առաջին յարկի խորանից երկրորդ յարկը բարձրանալու համար. վերին յարկի խորանն էլ ունի պատարագամատոյց սեղան. դէպի վերին խորանի անցքը սանդուխք չկայ։ Ներքին խորանի արևմտեան պատի վրայ կայ մի լուսամուտ. նոյնպիսի լուսամուտ կայ և վերին խորանի արևմտեան պատի վրայ, որ բացւում է դէպի դուրս և դարձեալ մի ուրիշ ընդարձակ պատուհան՝ դէպի եկեղեցու ներսը։ Բեմի աջ կողմում գըտնւում է նոյնպիսի երկյարկանի խորան, որոնց հաղորդակցութեան ճանապարհը ներքին խորանի առաստաղի վրայ եղած անցքն է. երկուսն էլ ունին պատարագամատոյց սեղաններ։ Խորանի արևելեան պատի մէջ կայ մի լուսանցք, իսկ հարաւային պատի վրայ մի ընդարձակ անցք, որ բացւում է բեմի յետևը։ Խորանի մուտքի որմի մէջ գտնւում է մի գաղտնի պահարան՝ եկեղեցու գանձն ու մասունքները պահելու համար. պահարանի բերանի քարը նման լինելով

որմի քարերին՝ փակուած ժամանակը չի կարելի իմանալ, որ այդտեղ գաղտնի պահարան կայ. նոյնպիսի գաղտնարան կայ և մուտքի վրայ, որմի մէջ։

Բեմի ձախ կողմը գտնւում է նոյնպէս մի երկյարկանի խորան, որի մուտքը դրսից չէ, այլ բեմի յետևից։ Այդ խորանումն են պահւում այժմ սբ. մասունքները։ Այս խորաններն էլ ունին պատարագամատոյց սեղաններ. այդպիսով Ամենափրկիչ եկեղեցին ինը պատարագամատոյց սեղան ունի. մէկ՝ գլխաւոր սեղանը խաչկալով և ութն էլ խորանների մէջ։ Փայտեայ խաչկալը զարդարուած է նկարներով և սրբոց պատկերներով։ Մկրտութեան աւազանը գտնւում է հիւսիսային պատի մէջ։

Եկեղեցին լուսաւորւում է բացի գմբէթի չորս լուսամուտներից և ութը պատուհաններով, որոնցից երեք-երեք հատ գտնւում են հիւսիսային և հարաւային որմերի մէջ, մի-մի հատ էլ արևելեան և արևմտեան որմերի մէջ։

Եկեղեցու երկարութիւնը, արևելքից-արևմուտք, բեմի հետ միասին, 29 արշ. է, լայնութիւնը 17 արշ. 12 վ., բարձրութիւնը 32 արշ.։ Կամարների բարձրութիւնն է 17 արշ., իսկ տարածութիւնը (կամարների միջի) 9 արշ. 6 վ.։ Բեմի բարձրութիւնն է 1 արշ. 12 վ.։ Ներքին աջ խորանի մուտքի բարձրութիւնն է 2 արշ. $10^1/_2$ վ., լայնութիւնը 1 արշ. 8 վ.։ Խորանի երկարութիւնն է 5 արշ. $7^1/_2$ վ., լայնութիւնը 2 արշ. $5^1/_2$, բարձրութիւնը 5 արշ. 4 վ.։ Ներքին խորանի առաստաղի վրայ գտնուած անցքի երկարութիւնն է 1 արշ. $2^1/_2$ վ., լայնութիւնը $10^1/_2$ վ.։ Երկրորդ յարկի խորանի երկարութիւնն է 5 արշ. $10^1/_2$ վ., լայնութիւնը 2 արշ. $6^1/_2$ վ., բարձրութիւնը 4 արշ. 12 վ.։

Բեմի աջ կողմը գտնուող խորանի մուտքի բարձրութիւնն է 2 արշ. 12 վ., լայնութիւնը 1 արշ. $8^1/_2$ վ., երկարութիւնը 4 արշ. 2 վ.։ Խորանի բարձրութիւնն է 6 արշ., երկարութիւնը 6 արշ. $2^1/_2$ վ., լայնութիւնը 2 արշ. 4 վ.։

Այժմ դիտողութեան ենթարկենք Ամենափրկիչ եկեղեցին՝ արտաքուստ։

Եկեղեցու արևելեան պատի վրայ, արտաքին կողմից, կան ինը հատ գեղեցիկ սիւնազարդ և քանդակուած կամարներ, որոնց քանդակագործութիւնը մէկը միւսից տարբեր է։ Միջին կամարը միւսներից աւելի բարձր է և նրա տակն է գտնւում այն մեծ լուսամուտը, որ դէպի բեմն է բացւում։ Մի-մի փոքրիկ լուսամուտներ ևս գտնւում են ծայրերի կամարների տակ, որոնք բացւում են խորանների մէջ *)։

Պատի վերին ծայրին, քարի վրայ քանդակուած են՝ երկու քղանցքաւոր հանդերձ և սրածայր գլխարկներ կրող մարդկանց պատկերներ, որոնք ձեռքերի վրայ կրում են Ամենափրկիչ եկեղեցու փոքրիկ կաղապարը· քարի ճակատին արձանագրուած է·

«Կիւրիկէ Թագաւոր և Սմբատ Թագաւոր»։ Ափսոս որ պատկերները նուրբ չեն քանդակուած, կամ թէ ժամանակի ընթացքում կորցրել են իրենց նրբութիւնը։ Ինչպէս արևելեան որմի, նոյնպէս և հարաւային ու հիւսիսային պատերի վրայ եղել են սիւնազարդ կամարներ, որոնցից հարաւային որմի վրայ եղողը համարեա ոչնչացրած է, իսկ հիւսիսային պատի վրայինը միայն կիսով չափ է երևում, որովհետև ծածկուած է Մագիստրոսի ճեմարան կոչուած շէնքի պատով· այդ կողմից եկեղեցին ունեցել է նոյնպէս մի դուռը, որ ծածկուած է այդ շէնքի պատով։

Եկեղեցու արևելեան պատի վրայ, երկրորդ կամարի տակ, խորանի պատուհանից վերև կայ մի արձանագրութիւն՝ գրուած ՈԼԷ թուին (637—1188 Թ. փրկչ.), որից կարդացւում է միայն «կամաւն Աստուծոյ...»· մնացածն եղծուած է և չէ կարդացւում։ Արձանագրութիւնից ցած, սիւնի ձախ կողմը քանդակուած է մի ինչ որ կենդանու պատկեր։

---

*) Կամարները հաստատուած են 16 սիւների վրայ, որոնցից վեցը 2 կարգ սիւներից են բաղկացած, իսկ միւս չորսը 3 կարգ· այդ սիւները կազմուած են 6—7 կտորներից· սիւներն իրենց գըլխների վրայ կրում են գեղեցիկ քանդակներ։

## 5.

## ԱՐՔԱՅԱԿԱՆ ԴԱՄԲԱՐԱՆ

Սուրբ Աստուածածին եկեղեցու արեւելեան պատի տակ, արտաքուստ, գտնւում է միապաղաղ, եռանկիւնաձեւ քարից շինուած մի գերեզմանաքար, որի գեղեցկութիւնը, ձեւը եւ վրան կառուցուած կամարաձեւ խորանների հետքերը գուշակել են տալիս, որ նշանաւոր մարդու աճիւն պէտք է լինի այդտեղ ամփոփուած։ Մօտենալով գերեզմանաքարին եւ շուրջը բուսած խոտերն այս ու այն կողմը ցրուելով՝ կկարդաք քարի երեսի մի անկիւնում հետեւեալ պարզ եւ անպաճոյճ տողերը.

«Այս է հանգիստ Գուրգէնայ որդւոյ Աշոտայ Ողորմածին»։

Գլխարկներդ վերցնում էք եւ ծունկ չոքում. հայ արքայի դամբարան է...։ Գուրգէնը Լոռուայ անկախ եւ ինքնուրոյն իշխանութեան առաջին պետն էր։

Գուրգէն թագաւորի դամբարանի մօտն է եղել նաեւ նրա որդի Դաւիթ Անհողին Աղուանից թագաւորի գերեզմանը, բայց այժմ տապանաքար չկայ, երեւի փոխադրել եւ ուրիշ բանի համար են գործ դրել...։ Այդ երկու արքաների դամբարանների վրայ եղել են երկու կամարաձեւ ծածկուած խորաններ, բայց տարաբաղդաբար 1836 թ. Յովհաննէս եպիսկ. Տէր-Բարսեղեանը քանդել է տուել այդ դարաւոր շէնքը եւ քարերը գործ դրել եկեղեցու աւերուած մասերի վերանորոգման վրայ...։ Այդպիսով այդ դամբարանները զրկուելով իրենց պաշտպանող կամարներից՝ հաւասարուել են գետնին, մէկի հետքն էլ չկայ, իսկ միւսն էլ ծածկուած է արշինաչափ խոտերով ու եղինճներով՝ որոնք կարծես թէ մեր այժմեան սերնդի անփութութիւնն ու անհոգութիւնը նախատելու եւ մեր նախնեաց սբ. աճիւնների կողմից բողոքելու համար՝ ծակոտում են մօտեցողների ձեռքերն ու մարմինը...։

Արքայական դամբարանների շուրջը կան շատ ուրիշ

գերեզմաններ, որոնց տապանաքարերի մի մասն արձանագրուած է, մի մասը-ոչ։ Այսպէս օրինակի համար մէկ տապանաքարի վրայ գրուած է. «Այս է հանգիստ Ներսէս Փիլիստփայի». «Ած. ողորմի քեզ»։ Բոլոր գերեզմանաքարերն էլ գետնին հաւասարուել և անյայտանալու մօտ են. խոտով ծածկուած և անասունների ոտից կոխան են..։

## 6.

## ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ՃԵՄԱՐԱՆ

Նախագաւթի հիւսիսային կողմը, Ամենափրկիչ և սբ. Աստուածածին եկեղեցիների մէջ տեղը գտնուող կամարակապ փոքրիկ շէնքը կոչւում է Մագիստրոսի ճեմարան. պարզ երևում է, որ այս շինութիւնը աւելացրած է Ամենափրկիչ եկեղեցին կառուցանելուց յետոյ, որովհետև եկեղեցու քանդակագործ և սիւնազարդ դուռը և պատի վրայ եղող կամարները մնացել են ճեմարանի կամարների տակ։

Ճեմարանի առաստաղը բաղկացած է ութը կամարներից՝ հաստատուած 16 սիւների վրայ. պատերի երկարութեամբ կամարների մէջ գտնւում են փոքր կամարներ՝ իւրաքանչիւր պատի մէջ ութ հատ։ Տասնևվեց փոքր կամարների տակ յատակը գետնից բարձր է մի արշինաչափ և այդ ձևով երբև թէ ծառայելիս է եղել աշակերտներին՝ նստարանների տեղ։

Ճեմարանի մուտքը արևելեան կողմից բացւում է ուղղակի գաւթի մէջ. արևմտեան կողմից ճեմարանը բաց է եղել, իսկ այժմ փակուած է և այդ նոր աւելացրած որմի մէջ դրուած են երեք հատ խաչքարեր, որոնցից միջինը մեծ է, իսկ մնացած երկուսը փոքր։ Ամենափոքր խաչքարի վրայ բոլորագիր տառերով գրուած է.

«Սբ. Նշանդ Տէրունական Տէր Սարգսի լեր քաւարան»։ *)

---

*) Թէև այս տողի վերջը կարդացւում է «Թվին ԾԵ».—(55 և 606 Թ. փրկչ.), բայց կասկածելի է, որ ճիշտ լինի—երևի Ծ-ի փոխարէն ուրիշ տառ պէտք է լինի (հաւանականօրէն ՇԵ—(505—1056 Թ. փրկչ.)։

Միջինի վրայ, որ կարմիր քարից է և ամենից սիրուն քանդակուած՝ արձանագրութիւն չկայ. իսկ երրորդի վրայ գըրուած է.

«Սբ. խաչս բարեխաւս պր. Գորկուն թվ. . . . որդի Դաւթի զօրաւարին»:

Ճեմարանի հարաւային սիւներից մէկի վրայ հետևեալ արձանագրութիւնն է գտնւում.

«Թվին ՉԺԶ (716—1267 փրկչ.) կամաւն Աստուծոյ ես Ասխադան միաբանեցայ սբ. Ածածնիս և ետու արդիւնս ինչ. Հայրս Մխիթար և միաբանքս ետուն մեզ է պատարագ ի տաւնի Յովհաննու, որ յաշունքն կատարի»:

Ճեմարանի յատակը ծածկուած է գերեզմանաքարերով, մեծ մասամբ առանց արձանագրութեան. միայն մէկի վրայ կարդացւում է. «Վարդան սարկաւագ» խօսքերը:

Այս շէնքի երկարութիւնն է, արևելքից-արևմուտք, 15 արշ. 13 վ., լայնութիւնը 3 արշ. 7 վ., բարձրութիւնը 6 արշ. 7 վ.:

Աւանդաբար հաղորդւում է, որ մեր հռչակաւոր աստուածաբան Գրիգոր Մագիստրոսն այս շէնքումն է ուսուցել իր հասակաւոր աշակերտներին և այդ պատճառով էլ շէնքը կոչւում է «Մագիստրոսի ճեմարան»:

7.

## ՍՈՒՐԲ՝ ԳՐԻԳՈՐ ԵԿԵՂԵՑԻՆ

Սբ. Աստուածածին եկեղեցուց դէպի արևելք, ուղիղ նրա դիմացը, 16 արշին հեռաւորութեան վրայ գտնւում է սբ. Գրիգոր Լուսաւորիչ փոքրիկ սագաշէն եկեղեցին, որի մուտքը արևմտեան կողմից է, սբ. Աստուածածին եկեղեցու դիմացը: Սրբատաշ քարերից շինուած և սիւնազարդ մուտքի գլխին կայ մի փոքրիկ քանդակագործուած քար, իսկ այս քարի ձախ կողմը գտնւում է մի արձանագրուած և նոյնպէս քանդակազարդ խաչքար. արձանագրութիւնը եղծուած լինե-

*լով՝ չէ կարդացւում։ Մուտքի բարձրութիւնն է 2 արշ. 10 վերշ., լայնութիւնը 1 արշ. 7 վ.։*

*Յայտնի չէ թէ ով է կառուցել այս եկեղեցին և երբ. արտաքուստ բոլորաձև է, քանդակներով զարդարուած և սիրուն։ Փոքրիկ, բայց գեղեցիկ կաթողիկէի վրայի խաչն ընկած է։*

*Մուտքից ներս մտնելով՝ տեսնում էք կամարակապ, անսիւն և խաչաձև հրաշալի շէնք՝ երեք հատ պատարագամատոյց սեղաններով. չորս կամարները միմեանց հետ միանալով իրենց վրայ են պահում կաթողիկէն։ Եկեղեցին կառուցուած է մաքուր, սրբատաշ քարերից և ինչպէս երևում է պատերի վրայ մնացած հետքերից, սուաղած է եղել. ցայժմ մնացել է կաթողիկէի ներսի սուաղն ամբողջապէս։ Եկեղեցու ներսը ոչ մի արձանագրութիւն չկայ։ Կամարներից իւրաքանչիւրի տակ մի պատուհան կայ (բացի արևմտեան կողմից), իսկ կաթողիկէի վրայ երկու լուսամուտ։ Եկեղեցին ամբողջ է մնացել, միայն սրբատաշ քարերից շատերը փչացել են անձրևից։*

*Եկեղեցու հարաւային որմի վրայ գտնւում է հետևեալ արձանագրութիւնը.*

*«Ի թուականիս Հայոց ՇԺ* (510—1061 *փրկչ. թ.) ի թագաւորութեան Կիւրիկէի որդւոյ Դաւթի արքայի ի հայրապետութեան տն. Դէոսկորոսի ես Շապուհիկ իշխանաց իշխան որդի Գորբանիէլի ի տոհմէ Պահլաւունի յազգէ Արշակունեաց իմ հալալ ընչիւք գնեցի զաւրնակայ տափ և ետու յԱստուածաշէն մայրաքաղաք Սանահինս արդ որ զնա ի Սանահնէս հանել հնարի իմ մեղացս պարտական եղիցի և այս հրաման է տն. Դէոսկորոսի առաջնորդ որ Նստի սբ. ուխտիս պարտական է առաջի Աստուծոյ գքառասնից տաւնին պատարագն յամենայն եկեղեցիքս Շապհկանն մատուցանել և որ այս վճռիս հակառակէ ի փառաց որդւոյն Աստուծոյ որոշեալ է»։*

*Եկեղեցու երկարութիւնն է (արևելքից-արևմուտք)* 6 *արշ.* 12 *վ., լայնութիւնը* 6 *արշ.* $8^1/_2$ *վ., կամարների բարձրութիւնը* 5 *արշ.* 9 *վ., կամարների միջի տարածու-*

թիւնը 2 արշ. 9 վ., կաթողիկէի բարձրութիւնն է $8^1/_2$ արշին։

Այս հոյակապ և փառաշէն տաճարն այժմ լցուած է... անուխով և կոչւում է «անխատուն».... Արդեօք մարդուս զգացմունքները չվիրաւորուած կարելի՞ է դուրս գալ այդ սրբավայրից, սակայն աւելին ասելը կրկնութիւն կլինի...։

8.

ՓՈՔՐԻԿ ԳԱՒԻԹ

Սբ. Լուսաւորիչ եկեղեցուն կից, նրա շարունակութեամբ, շինուած է մի փոքրիկ կամարակապ և սրբատաշ քարից շին ուած գաւիթ։ Գաւթի խորանի մէջ կան երկու կամարաձև անցքեր՝ հաստ սիւներով. այդ կամարների աջ և ձախ կողմից կան լուսամուտներ։ Գաւիթն անսիւն է և առաստաղը հաստատուած է չորս կամարների վրայ։ Գաւթի հարաւային պատը սբ. Աստուածածին եկեղեցու հիւսիսային պատի շարունակութեամբ է շինուած. արևմտեան կողմը բոլորովին բաց է, իսկ արևելեանը՝ փակ. այս կողմի պատի մէջ ամրացրած է մի սպիտակ և գեղեցիկ քանդակուած խաչքար, որ մի քանի տեղերից արդէն աւերուել է. խաչքարի վրայ արձանագրուած է.

«Ի ՈԺ (610 — փրկչ. 1161) թուին ի թագաւորութեան վրաց Գէորգեայ կանգնեցաւ սբ. Ամենափրկիչս ի բարեխօսութիւն հաւատացելոց»։ Այս խաչքարի մօտ, որմի մէջ եղել է և մի ուրիշ խաչքար, որի տեղն է մնացել այժմ։ Գաւթի հիւսիսային և հարաւային որմերը լի են արձանագրութիւններով, որոնք բացառապէս զանազան նուիրատւութիւններ և նուիրողների անուններ են պարունակում։ Յատակը ծածկուած է տապանաքարերով, որոնց մեծ մասն առանց արձանագրութեան է։ Գաւթի արևելեան ծայրում գտնուող մի տապանաքար հետևեալ տապանագիրն ունի։

«Ծգնաւորն պատրոն Ներշէսն է քոյր պատրոնացն Զա-

քարէի և Իւանէի։ Այս գերեզմանաքարի երկարութիւնն է 3 արշ. 3 վ., լայնութիւնը 1 արշ. 5 վ.։

Ամբողջ գաւթի երկարութիւնն է 14 արշ. 6 վ., լայնութիւնը 3 արշ., 12 վ., բարձրութիւնը 6 արշին։

Այժմ գաւթի տանիքի մի մասը քանդուած է և եթէ այդպէս շարունակուի՝ շուտով ամբողջ առաստաղը կփլուի...։

9.

## ԳՐԱՏՈՒՆ ԿԱՄ ՆՇԽԱՐԱԽՈՒՑ

Փոքր գաւթի հիւսիսային որմի մէջ է գրատուն կամ նշխարատուն կոչուած հոյակապ շէնքի մուտքը, որ շինուած է Ամենափրկիչ եկեղեցու մուտքի նմանութեամբ. կազմուած է երեք կարգ սիւնազարդ կամարներով. իւրաքանչիւր կարգի սիւները կերտուած են մի ամբողջ քարից։ Մուտքի բարձրութիւնն է 2 արշ. $13^{1}/_{2}$ վ., լայնութիւնը 1 արշ. 10 վ.։ Մուտքի կամարի և ճակատի քարի վրայ, ինչպէս գաւթի որմերի ու կամարների վրայ, կան բազմաթիւ արձանագրութիւններ, որոնք համարեա բոլորն էլ վերաբերում են զանազան անձանց կողմից արած նուիրատուութեանց։ Բայց այլ ևս չկայ այն էական նշանակութիւն ունեցող արձանագրութիւնը, որ յառաջ է բերում Սարգիս եպ. Ջալալեանը և որից երևում է, որ նշխարատունը շինել է տուել ՇԺԲ (512—1063 փրկչ.) թուին Դաւիթ արքայի դուստր Հրանուշ թագուհին. ահա այդ արձանագրութիւնը.

«Ի ՇԺԲ թուին Հայոց ի հայրապետութեան տեառն Դէոսկորոսի ի թագաւորութեան Կիւրիկէի և Սմբատայ ես Հրանուշ Թագուհի դուստր Դաւթի Արքայի շինեցի զնշխարատունս և զեկեղեցիս, և ետու զնորաշէնքն ի Սանահինս վասն իմ մեղաց թողութեանն և իմ եղբարցն արեւշատութեան, արդ առաջնորդ որ նստի ի Սանահինս պարտական է առաջի Աստուծոյ որ իմ եկեղեցիս ժամ ինձ առնէ. և ոք զնորաշէնքն ի Սանահնէս հանէ, կամ զիմ ժամն խափանէ

'ի փառաց սուրբ Երրորդութեան, և գ. ժողովոյն Նզովեալ լիցի անլուծանելի»։

Նշխարատունը մի հրաշակերտ, անսիւն, կամարակապ և սիրուն, կոփածոյ քարերից շինուած հաստատութիւն է. գմբէթի գլուխը սրածայր չէ, եկեղեցիների գմբէթների պէս, այլ տափակ և մի մեծ բացուածքով՝ որտեղից արտաքին լոյսը ներս է թափանցում։ $16^1/_2$ արշին բարձրութիւն ունեցող գմբէթը կանգնած է չորս հոյակապ և ընդարձակ կամարների վրայ, որոնք հաստատուած են չորս մեծ ու գեղեցիկ քանդակուած կիսասիւների վրայ, որոնցից ամեն մէկն ուրիշ տեսակ քանդակներ ունի. իւրաքանչիւր կիսասիւն բաղկացած է 3 հատ միապաղաղ քարերից. սիւների հրաշալի քանդակները հիացնում են նայողին։ Հիւսիսային որմի մէջ գտնուող սեան վերին պատուանդանի վրայ քանդակուած են ի մէջի այլոց և երկու իրար փաթաթուած օձեր։

Այս փառաշէն տունը քառակուսի ձև ունի և ամեն մի կողմի երկարութիւնն է 12 արշ. 11 վ., իսկ բարձրութիւնը 16 արշ. 8 վ.։ Կամարների լայնութիւնն է 7 արշ. 12 վ.։

Ներքևից նայելիս՝ կաթողիկէն երկաթից կամ պղնձից շինուածի տպաւորութիւն է անում. կաթողիկէի վրայ նկատւում են վեց հատ ութանկիւն կանոնաւոր բազմանկեան ձևեր, որոնք քանի գնում՝ այնքան փոքրանում են։

Նշխարատան ներսի կողմից պատերի մէջ եղած դարաններն ենթադրել են տալիս, որ այս շէնքը պէտք է ծառայելիս լինէր իբրև ձեռագրների պահեստի տեղ և այդ պատճառով էլ կոչուել է նաև մատենադարան կամ գրատուն։

Արևմտեան կողմից որմի մէջ գտնւում է մի մեծ դարան՝ կամարաձև ու սիւնազարդ՝ 2 արշ. 14 վ. լայնութեամբ, 3 արշ. $3^1/_2$ վ. բարձրութեամբ և 10 վ. խորութեամբ։

Արևելեան որմի մէջ կան 3 դարաններ, որոնք միմեանց հաւասար չեն. սրանցից մէկն, ինչպէս երևում է ծխնելոյզի հետքերից, ծառայելիս է եղել իբրև վառարան և 2 արշ. լայնութիւն, 1 արշ. $12^1/_2$ վ. բարձրութիւն ունի։ Հիւսիսային որմի մէջ կան չորս դարաններ, իսկ հարաւային պա-

տի մէջ, ուրեղ գտնւում է նաև գրատան մուտքը, կայ միայն մի հատ դարան։ Բոլոր դարանների խորութիւնը հաւասար է։

Նշխարատան ներսի պատերի վրայ ոչ մի արձանագրութեան հետք չէ երևում. կան մի քանի փոքրիկ խաչքարեր։

Բացի գմբէթի բացուածքից՝ արևելեան պատի մէջ կայ մի փոքրիկ լուսամուտ։

Այս հոյակապ շէնքն այժմ ծառայում է,...բաքոսի տաճարի տեղ. ամբողջ յատակը ծածկուած է գինու կարասներով....։

10.

ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆ

Սբ. Աստուածածին եկեղեցու հիւսիսային որմին կից կառուցուած է զանգակատունը, որի ոչ շինութեան ժամանակն է յայտնի և ոչ էլ շինողի անունը. միայն նախագաւթի հարաւային որմի վրայ, աւագ գաւթի ձախ կողմը, գտնուող արձանագրութիւնից երևում է, որ զանգակատան շէնքը վերանորոգել է վանքի առաջնորդ Սարգիս եպ. Բէքբէքեանը ՌՃԱ (1101—1652 փրկչ.) թուին։

Զանգակատունը մի բարձր քառանկիւնի շէնք է՝ գլուխը զարդարուած փոքրիկ կաթողիկէով. արևելեան պատի մէջ է մուտքը, մի ընդարձակ լուսամուտ և նրա տակը 3 փոքրիկ լուսանցք։ Հիւսիսային պատի մէջ կայ նոյնպէս մի մեծ լուսամուտ, 3 փոքրիկ պատուհան և մի մուտք։ Զանգակատան իսկական ու գեղեցիկ սիւնազարդ մուտքը, որ այժմ քար ու կրի պատով շարուած է, եղել է արևմտեան կողմից. այս կողմի պատի վրայ կան 2 ընդարձակ, 3 միջակ և մի փոքրիկ լուսամուտ. մուտքի կամարի վրայ քանդակուած են 2 բազէ, որոնց գլուխները կտրտուած են։ Այս որմի մէջ եղել է մի խաչաձև բացուածք, որ յետոյ լցրել են քանդակուած կարմիր քարերով։ Հարաւային պատը, որ կցուած է սբ. Աստուածածին եկեղեցու

գաւթին, ունի. մի ընդարձակ պատուհան և մի փոքր լուսանցք։

Արտաքուստ, զանգակատան պատերի վրայ, միայն մի արձանագրութիւն կայ, արևմտեան կողմը, որով իմանում ենք, որ Սղէս անունով մէկը նուիրել է եկեղեցուն իր ջրաղացը, իսկ նրա թոռը նորոգել է այդ ջրաղացը։

Զանգակատան արևելեան մուտքից, որ այժմ լցուած է գաճով, բարձրանալով 18 աստիճան, հասնում էք մի սրահ, որ այժմ լի է աւելներով. այդ սրահի մէջ կան 3 հատ պատարագամատոյց խորաններ՝ իրար նման և հաւասար. միայն աջ կողմի երրորդ խորանումն է կանգուն մնացել բեմը։ Վերջին խորանի ճակատին արձանագրուած է.

«Կամաւն Աստուծոյ ես Աթս որդի Արտաւազայ աւրհնեցի զեկեղեցիս և զզանգակատունս որ շինեալ էր արեան մերձաւորի վանիս որդի Աբասն և միաբանքս հաստատեցին զամենայն եկեղեցիս ինձ պատարագ»։ Այս խորաններից իւրաքանչիւրն ունի մի-մի լուսամուտ։

Այդ սրահից էլ 13 աստիճան բարձրանալով՝ հասնում էք մի երկրորդ սրահ, որ ընդարձակ, անսիւն և կամարակապ շինութիւն է. չորս կամարները միմեանց կտրելով՝ կազմում են չորս-չորս գեղեցիկ անկիւններ և միանալով միմեանց հետ՝ իրենց վրայ են կրում զանգակատան կաթողիկէն։ Այս սրահի արևելեան պատի մէջ կայ 2 լուսամուտ, որոնցից մէկը փակուած է։ Արևմտեան, հիւսիսային և հարաւային որմերի մէջ կայ մի-մի լուսամուտ. վերջինիս մէջ. նաև մի փոքրիկ լուսանցք։ Այս պատուհաններից դուրս նայելով՝ ձեր աչքի առաջ կենդանանում է ինքը բնութիւնը՝ իր չքնաղ տեսարաններով և ձեր երևակայութեան թռիչքը մի րոպէում անսահման տարածութիւններ է չափում...։

Զանգակատան կաթողիկէն հաստատուած է 6 սիւների վրայ, իսկ իւրաքանչիւր սիւնը բաղկացած է չորս կիսասիւներից։

Ամբողջ զանգակատունը շինուած է սրբատաշ քարից։

Ամբողջ զանգակատան բարձրութիւնն է 28 արշին. պա-

տերի լայնութիւնը—10 արշին. առաջին յարկի սրահի երկարութիւնն է 6 արշ. 6 վ., լայնութիւնը 3 արշ. 7 վ., բարձրութիւնը 5 արշ. 3 վ.։ Այս սրահումն եղող խորաններից իւրանքանչիւրի երկարութիւնն է 3 արշ. 6 վ., լայնութիւնը 1 արշ. 10 վ., բարձրութիւնը 4 արշ. 5 վ.։

Երկրորդ յարկի սրահի երկարութիւնն է (արևելքից-արևմուտք) 7 արշ. 14 վ., լայնութիւնը 7 արշ. 8 վ., բարձրութիւնը 5 արշ. 7 վ. կամարների միջի տարածութիւնը 6 արշ. 5 վ.։ Այս սրահից սկսած՝ կաթողիկէի բարձրութիւնն է 14 արշ. 10 վ.։

## 11.

## ՍՊԱՍԱԼԱՐՆԵՐԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ

Սանահնի հարաւ-արևելեան կողմը, Ամենափրկիչ եկեղեցուց մօտ 20 սաժէն հեռաւորութեան վրայ կայ մի մատուռ՝ սրբատաշ քարից շինուած, անգմբէթ. տանիքը ծածկուած է կղմինտրաձև քարերով, որ կոչւում են «լորփին», «սալքար» և մի վերշոկաչափ հաստութիւն ունին - այսպիսի «լորփին»-ներով են ծածկուած բոլոր եկեղեցիների տանիքները։ Մատուռն ամբողջովին կանգուն է, վնասուած է միայն տանիքի հարաւային կողմը, ուր «լորփին»-ները թափուած են։ Տանիքի արևմտեան ծայրին կանգնեցրած է մի սիւն, քանդակազարդ եկեղեցու կաղապար։

Մատուռի մուտքը գտնւում է արևմտեան կողմը և վերին մասում քանդակազարդուած է. մուտքի ճակատին, կամարակապ շրջանակի մէջ, քանդակուած է մի խաչ. խաչի շուրջը քանդակուած են զանազան ծաղիկների ձևեր և երկու աղաւնի։ Այդ խաչի շուրջը կամարաձև արձանագրուած է հետևեալը.

«Զաքարէ և Իւանէ որդիք մեծին Սարգսի շինեցաք զհանգստարանս յիշեցէք ի Քս. ի թվին Հայոց ՈԼԸ»—(638—1189 փրկչ. թ.)։

Մատուռը ներսից բաժանւում է երկու մասի՝ արևե-

լեան և արևմտեան. երկու մասի յատակներն էլ հաւասար բարձրութիւն ունին, իսկ առաստաղները—ոչ. արևմտեան մասն աւելի բարձր է, քան արևելեանը։ Արևմտեան մասը նոր աւելացրած է երևում և եթէ դրսից նայելու լինինք՝ մի առանձին մատուռի պէս է երևում, թէև ներսից այդ այնքան էլ աչքի չէ ընկնում։ Հին մասի չորս կամարները հաստատուած են ութը փոքրիկ կիսասիւների վրայ. նոր մասն անսիւն է և կամարակապ։ Յատակը ծածկուած է 17 հատ մեծ-մեծ սրբատաշ տապանաքարերով. ինչպէս երևում է՝ հին մասի մէջ միայն երեք տապանաքար է եղել, մնացածներն յետոյ են աւելացել։ Այդ երեք գամբարանները Զաքարէ Սպասալարի, իր հօր՝ Սարգիս և պապ Վահրամինն են. իւրաքանչիւր գամբարանի վրայ մի խաչքար է եղել, սակայն այժմ միայն մի խաչքար կայ կանգուն մնացած, մնացած երկուսի միայն պատուանդաններն են մնացել։ Ամբողջ մնացած խաչքարը հրաշալի քանդակներ ունի և արձանագրուած է.

«Նշան Աստուծոյ բարեխաւս լեր ամիր սպասալար Հայոց և Վրաց Սարգսին»։ խաչքարի ստորին մասում գրուած է.

«Ի ՈԼՁ (636—1187) թուին կատարեցաւ ի Քս Մեծն Սարգիս, որդի Զաքարէի թոռն աւագ Սարգսի. որդիքս Զաքարէ և Իվանէ կանգնեցաք զխաչս, յիշեցէք»։

Իսկական տապանաքարերը հասարակ, պարզ ու մեծ քարեր են, առանց քանդակագործութեան և արձանագրութեան, երկուսն էլ մասամբ ճեղքուած են։

Մնացած գերեզմանաքարերը Սպասալարների տոհմի, Արղութեանների հանգուցեալներին են պատկանում. դրանցից մի քանիսը հայերէն լեզուով գրուած տապանագրերի հետ ունին նաև ռուսերէն արձանագրութիւն. մէկն էլ վրացերէն տապանագիր ունի։

Մատուռի արևելեան և հիւսիսային որմերի մէջ կան մէկ-մէկ քառանկիւնի, երկար ու նեղ լուսամուտներ, իսկ հարաւային որմի մէջ մի կլորաձև լուսանցք։

Մատուռի հին մասի երկարութիւնն է (արևելքից-արև-


ԲՈՒԼԱՆԸԽ
ԿԱՄ
ՀԱՐՔ
Մաշտաբ $\frac{1}{500,000}$
Նկ. Վ. Միրզոյեանց 1899 թ.
60°
ՄԱՆԱԶԿԵՐՏ
ԽԼԱԹ
ՎԱՆԱՅ ԼԻՃ

մուտք) 7 արշ., լայնութիւնը 5 արշ. $2^1/_2$ վերշ., բարձրութիւնը 4 արշ.։ Նոր մասի երկարութիւնն է 6 արշ. 5 վ., լայնութիւնը (հիւսիսից-հարաւ) $6^1/_2$ արշ., բարձրութիւնը 6 արշ. 2 վ.։ Ամբողջի երկարութիւնն է 13 արշ. 5 վ.։

Մատուռի արեւելեան որմին կից, Սպասալարների գամբարանների վրայ շինուած են 3 փոքրիկ, բայց համաչափ ու գեղեցիկ խորաններ՝ պատարագամատոյց սեղաններով. դրանք այնպէս են յարմարեցրած՝ որ պատարագիչ քահանան ուղղակի կանգնած լինի գերեզմանների վրայ։ Այդ խորաններից միջինը երկար ու կամարաձեւ է, իսկ միւս 2-ը գմբէթաձեւ։

Երեք մատուռներն էլ համարեա թէ ամբողջովին քանդուած են, մնացել են միայն մի քանի որմեր ու գմբէթներ, սրանց վրայի քարերն էլ ընկած են։

12.

ՍԲ. ՅԱԿՈՎԲ ԵԿԵՂԵՑՈՒ ԱՒԵՐԱԿՆԵՐԸ

Սպասալարների գամբարանից մի փոքր հեռու, դէպի արեւելք, գտնւում են սբ. Յակոբ եկեղեցու աւերակները, որից մնացել են միայն աջակողմեան 2 խորանները։ Եկեղեցու աւերուած մասից երեւում է, որ բաւականին ընդարձակ է եղել և սրբատաշ քարից կառուցուած։

13.

ՍԲ. ՅԱՐՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ

Սբ. Յակոբ եկեղեցու մնացորդներից դէպի արեւելք, մօտ 10 սաժէն հեռաւորութեան վրայ կանգուն է սբ. Յարութեան եկեղեցին՝ սրբատաշ քարից կերտուած և առանց կաթողիկէի. վնասուած են միայն տանիքի արտաքին լօրփինները։ Մուտքն արեւմտեան կողմից է և շրջապատուած սանդխաձեւ քանդակներով։ Եկեղեցու ներսը նոյնպէս սրբատաշ քարից է. միայն յատակը ծածկուած է հողով։ Եկեղեցու երկու պատարագամատոյց խորանները միմեանցից բաժանուած են միջնասիւնով. իւրաքանչիւր խորան մի յուսա-

մուտ ունի արևելեան կողմից։ Որմերի վրայ՝ ո՛չ ներսից ու ոչ դրսից արձանագրութեան հետք անգամ չկայ։ Եկեղեցու երկարութիւնը 6 արշ. 3 վ. է, լայնութիւնը 4 արշ. 8 վ.։

Այժմ այնքան անխնամ է թողնուած, որ անասունների աղբով լի է....։

## 14.

## ԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԷՈՐԴՈՒ ԴԱՄԲԱՐԱՆԸ

Սբ. Յարութեան եկեղեցու հիւսիսային որմին կից գտնւում է մի գեղեցիկ քանդակներով զարդարուած և փոքրիկ կամարների վրայ հաստատուած ընդարձակ պատուանդան, որի վրայ կանգնած է նուրբ քանդակներով լցուած և հրաշակերտ մի խաչքար։ Այս խաչարձանի տակն է ամփոփուած մեր եկեղեցական պատմութեան մէջ ամենայայտնի հոգևորականներից մէկի, Սանահնի նշանաւոր վանահայր Գրիգոր Տուտէորդու աճիւնը։ Տուտէորդին ինքն է շինել տուել իր մահարձանը և խաչքարի յետևի երեսի վրայ գրել տուել հետևեալը.

«Յամի յորում եղև կատարումն արքային վրաց Գուրգէնի ես Գրիգոր վարդապետ որդի Տուտայ Խաչինեցի որ ընակեալ ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս կանգնեցի զխաչըս ի վերայ հանգստարանի իմոյ ակնունելով եկից կենդանոյս, և արդ անկեալ դնիմ առ ոտս քո նշանդ Աստուծոյ և աղաչեմ անբարբառ շրթամբ զի ի մեծի երևման քոյ լինիցիս բարեխաւս անարժան ծառայիս Քսի։ Եւ որք երկրպագէք յիշեցէք ի Յս. Քս. կանգնեցաւ ի հայրապետութեան Յովհաննէսի, յորում ամի նորոգեցաւ կաթուղիկէն սբ. ի թուին ՈԼԴ (634—1185). զՄխիթար կազմիչս յիշեցէք յիշեցէք ի Քրիստոս»։

Այս դամբարանի պատուանդանի շրջագիծն է 14 արշ. 12 վ., բարձրութիւնը 3 արշ. 5 վ. խաչքարի բարձրութիւնն է 3 արշ. 2 վ. խաչքարի միջին մասի լայնութիւնն է 1 արշ. 7 վ.։

15.

## ՈՒՍՈՒՑԻՉ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԱՀԱՆԱՅԻ ԴԱՄԲԱՐԱՆԸ

Սբ. Յարութեան եկեղեցուց դէպի արեւելք, մի փոքր հեռու, բարձր պատուանդանի վրայ ամրացրած է դարձեալ մի խաչքար, որի տակ ամփոփուած են Հաղբատի առաջնորդ Յովհաննէս եպիսկոպոսի ուսուցիչ Յովհաննէս քահանայի երկրաւոր մնացորդները։ Գիւղացիներն այս դամբարանին «անուցիչ» են կոչում, երեւի Յովհաննէս քահանայի ուսուցիչ կամ «անուցիչ» լինելն աւանդաբար հաղորդուել է այժմեան սերնդին։

Խաչքարի յետեւի երեսի վրայ արձանագրուած է.

«Ես Տէր Յովհաննէս առաջնորդ Հաղբատոյ կանգնեցի գլխաչս ի հանգստարանի ուսուցանողին իմոյ Յովհաննէս քահանայի, որք երկրպագէք յիշեցէք ի Քրիստոս»։

Խաչքարը կարմիր քարից է եւ աչքի է ընկնում իր սիրուն քանդակներով։

16.

## ՍԲ. ՍԱՐԳԻՍ ԵԿԵՂԵՑԻՆ

Գիւղի հարաւ-արեւմտեան կողմը, մի փոքրիկ ապառաժոտ բլրի վրայ, 30 մետր վանքի դիրքից բարձր կանգնած է միայնակ սբ. Սարգսի մատուռը։ Այս փոքրիկ խորանաձեւ եկեղեցին կամարակապ է, սրբատաշ քարից չէ շինուած եւ կաթողիկէ չունի։ Արեւելեան կամարի տակ ունի մի պատարագամատոյց սեղան եւ մի լուսամուտ. մատուռն ամբողջովին անխախտ է։

17.

## ՍԲ. ԿԱՐԱՊԵՏ ԵԿԵՂԵՑԻՆ

Գիւղի արեւելեան կողմը գտնուող փոքր բլրակի վրայ, որ նոյնպէս 30 մետր բարձր է վանքի դիրքից (1030 մետր ծովի մակերեւոյթից), շինուած է սբ. Կարապետի մատուռը

որ կառուցուած է սրբատաշ քարերից, կամարակապ և անսիւն շէնք է. մուտքը գտնւում է արևմտեան կողմից. հիւսիսային կողմից նոյնպէս դուռը կայ դէպի պատարագամատոյց սեղանը։ Մատուռի որմերն են ամբողջ մնացել, առաստաղն ու կամարներից մի քանիսը քանդուած են։ Այստեղ երբեմն պատարագ է լինում և ուխտի օրը շրջակայ գիւղերից բաւականին ուխտաւորներ են գալիս։

## VI.

## ԱՂԲԻՒՐՆԵՐԸ

---

Գիւղի հարաւ-արևմտեան ծայրին է գտնւում Զաքարէ և Իւանէ Սպասալարների շինել տուած հոյակապ, ընդարձակ և կամարակապ աղբիւրը, որի ջուրը 9 աստիճան Րէօմիւրի ջերմութիւն ունէր օգոստոսի առաջին կիսում։ Աղբիւրի ջրերը հաւաքւում են եօթն աւազանների մէջ. այդ աւազանները գետնի տակ են և այնքան ընդարձակ ու բարձր, որ կարելի է մէջն ազատ մանգալ։ Աւազանների մէջ ջուրը հաւաքուելով դուրս է ծորում խողովակով և լցւում քարից շինուած երկար նաւերի մէջ։ Վերոյիշեալ եօթն աւազաններից այժմ միայն երկուսի մէջ ջուր կայ։ Աղբիւրի ընդարձակ կամարը մի միջնասիւնով երկու հաւասար մասերի է բաժանուած։

Երկու կամարների երկարութիւնն է 15 արշ. 3 վ., իսկ իւրաքանչիւրինն առանձին 7 արշ. 9 վ.։ Կամարի լայնութիւնն է 6 արշ. 11 վ., բարձրութիւնը $5\frac{1}{2}$ արշին։

Աղբիւրի ջրի մի մասը խողովակներով բերուած է վանքի գաւիթը. բերողն եղել է վանքի վանահայր Յարութիւն արքեպիսկոպոս Տէր-Բարսեղեանցը։ Վանքի աղբիւրի փոքրիկ կամարի վրայ արձանագրուած է.

«1835 Թ. Յարութիւն արքեպիսկոպոս շինեաց զաղբիւրս այս յորդահոս. ով վայելողք այս ջրոյս յիշեցէք զսա առ Տէր Յիսուս. սա էր տոհմէն Տէր-Բարսեղեանց և սահմանէն Տա-

որ կառուցուած է սրբատաշ քարերից, կամարակապ և անսիւն շէնք է. մուտքը գտնւում է արևմտեան կողմից. Հիւսիսային կողմից նոյնպէս դուռը կայ դէպի պատարագամատոյց սեղանը։ Մատուռի որմերն են ամբողջ մնացել, առաստաղն ու կամարներից մի քանիսը քանդուած են։ Այստեղ երբեմն պատարագ է լինում և ուխտի օրը շրջակայ գիւղերից բաւականին ուխտաւորներ են գալիս։

## VI.

## ԱՂԲԻՒՐՆԵՐԸ

Գիւղի հարաւ-արևմտեան ծայրին է գտնւում Զաքարէ և Իւանէ Սպասալարների շինել տուած հոյակապ, ընդարձակ և կամարակապ աղբիւրը, որի ջուրը 9 աստիճան Րէօմիւրի ջերմութիւն ունէր օգոստոսի առաջին կիսում։ Աղբիւրի ջրերը հաւաքւում են եօթն աւազանների մէջ. այդ աւազանները գետնի տակ են և այնքան ընդարձակ ու բարձր, որ կարելի է մէջն ազատ մանգալ։ Աւազանների մէջ ջուրը հաւաքուելով դուրս է ծորում խողովակով և լցւում քարից շինուած երկար նաւերի մէջ։ Վերոյիշեալ եօթն աւազաններից այժմ միայն երկուսի մէջ ջուր կայ։ Աղբիւրի ընդարձակ կամարը մի միջնասիւնով երկու հաւասար մասերի է բաժանուած։

Երկու կամարների երկարութիւնն է 15 արշ. 3 վ., իսկ իւրաքանչիւրինն առանձին 7 արշ. 9 վ.։ Կամարի լայնութիւնն է 6 արշ. 11 վ., բարձրութիւնը $5^1/_2$ արշին։

Աղբիւրի ջրի մի մասը խողովակներով բերուած է վանքի գաւիթը. բերողն եղել է վանքի վանահայր Յարութիւն արքեպիսկոպոս Տէր-Բարսեղեանցը։ Վանքի աղբիւրի փոքրիկ կամարի վրայ արձանագրուած է.

«1835 թ. Յարութիւն արքեպիսկոպոս շինեաց զաղբիւրս այս յորդահոս. ո՛վ վայելողք այս ջրոյս յիշեցէք զսա առ Տէր Յիսուս. սա էր տոհմէն Տէր-Բարսեղեանց և սահմանէն Տա-

ուղայ, անտի Սանահին յաջորդեաց, արդեամբ իւրով զայս օրհնեաց»։

Խողովակների փչանալու պատճառով այս ջուրը երբեմն պղտորւում է և անպիտան համ ստանում։

## VII.

### *ՍԱՆԱՀՆԻ ԿԱՄՈՒՐՋԸ*

---

Գիւղից ցած, ձորի մէջ, ահռելի դղրդիւնով և փրփրալից ալիքներով սրնթաց վազող Դեբէտի կամ Զորագետի վրայ է ձգուած այն հոյակապ, կամարաձև և քարաշէն կամուրջը, որ իբրև ապացոյց մեր նախնեաց ճարտարապետական հմտութեան, այսօր ևս լուռ վկայ է իր տակովն անցնող ալիքների ողբաձայն մռնչիւններին....։

Աւանդեաց ձորի այս պատմական կամուրջը շինել է տուել Նանա այրի թագուհին՝ ի յիշատակ իր վաղաթառամ ամուսնու, Լօռու Աբաս թագաւորի և Զաքարէ ու Իւանէ սպասալար եղբայրների։

Կամուրջի երկարութիւնն է 28 սաժէն, լայնութիւնը 5 արշին, կամարի բարձրութիւնը ջրի մակերևոյթից (մեր գիտած ժամանակը, ամառը) 19 արշին. շինուած է կամարների վրայ՝ սրբատաշ քարերից։ Կամուրջի մի ծայրը հաստատուած է ժայռի վրայ, իսկ միւս ծայրն ամուր որմի վրայ և դէպի հարաւ իջնում է աստիճաններով։ Կամուրջի երկու կողմը գտնւում են չորս կոփածոյ քարից քանդակուած առիւծներ, որոնք ժամանակի ընթացքում բաւականին մաշուել են։

Կամուրջի ներքևի ծայրին կայ մի խաչքար՝ կամուրջը շինել տուող Նանա թագուհու հրամանով կանգնեցրած։ Խաչքարի վրայ արձանագրուած է հետևեալը.

«Կամաւն Աստուծոյ ես Նանա յազգէ Բագրատունեաց դուստր իշխանաց իշխան Սարգսի քոյր Զաքարէի և Իւանէի կին Աբասայ թագաւորի որ կեսաւրեայ վախճանեալ է խա-

ուղղայ, անտի Սանահին յաջորդեաց, արդեամբ իւրով գալոց օրհնեաց»։

Խողովակների փչանալու պատճառով այս ջուրը երբեմն պղտորւում է և անպիտան համ ստանում։

## VII.

### ՍԱՆԱՀՆԻ ԿԱՄՈՒՐՋԸ

---

Գիւղից ցած, ձորի մէջ, ահռելի դղրդիւնով և փրփրալից ալիքներով սրնթաց վազող Դեբէտի կամ Ձորագետի վրայ է ձգուած այն հոյակապ, կամարաձև և քարաշէն կամուրջը, որ իբրև ապացոյց մեր նախնեաց ճարտարապետական հըմտութեան, այսօր ևս լուռ վկայ է իր տակովն անցնող ալիքների ողբաձայն մռնչիւնների....։

Աւանդեաց ձորի այս պատմական կամուրջը շինել է տուել Նանա այրի թագուհին՝ ի յիշատակ իր վաղաժամ ամուսնու, Լոռու Աբաս թագաւորի և Զաքարէ ու Իւանէ սպասալար եղբայրների։

Կամուրջի երկարութիւնն է 28 սաժէն, լայնութիւնը 5 արշին, կամարի բարձրութիւնը ջրի մակերևոյթից (մեր գիտած ժամանակը, ամառը) 19 արշին. շինուած է կամարգիտ ժամանակը... 

Կամուրջի ներքևի ծայրին կայ մի խաչքար՝ կամուրջը շինել տուող Նանա թագուհու հրամանով կանգնեցրած։ Խաչքարի վրայ արձանագրուած է հետևեալը.

«Կամաւն Աստուծոյ ես Նանա յազգէ Բագրատունեաց դուստր իշխանաց իշխան Սարգսի քոյր Զաքարէի և Իւանէի կին Աբասայ թագաւորի որ կեսաւրեայ վախճանեալ է խա-

ւարեցոյց զմեզ. շինեցի զկամուրջս, կանգնեցի զխաչս յիշատակ նմա և ի մխիթարութիւն ինձ և ի կեանս ծնողաց և եղբարց մերոց. յիշեցէք ի Քս. Ցս.»։

Խաչի ճակատը, որ այժմ կոտրուած և վայր է ընկած, կրում է հետևեալ արձանագրութիւնը.

«Սուրբ տէրունական»։

## VIII.

### ՎԱՆՔԻ ՍՐԲՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Վանքի սրբութիւնները կամ սրբոց մասունքները պահւում են սբ. Նշան եկեղեցու խորաններից մէկում՝ առանձին արկղի մէջ. այս պատկառելի աւանդներն եկեղեցու գլխաւոր հարստութիւնն են կազմում և վանքն աւելի նուիրական դարձնում ժողովրդի աչքում։ Մասունքներից մեծ մասը նուիրուած են զանազան անձերից վերջին դարերում. յայտնի է, որ հնումը սովորութիւն կար, որ նշանաւոր ընտանիքները կամ իշխանական տոհմերը մեծ գնով ձեռք էին բերում մի որև է սրբազան մասունք և պահում կամ թէ վերջը նուիրում իրենց մայրենի եկեղեցուն. այսպէս օրինակ Բագրատունեաց արքայական տունն ունէր սբ. Նշանի մասունքը, որ յետոյ Աշոտ Ողորմածի ամուսին Խոսրովանոյշը նուիրեց Հաղբատայ վանքին։ Վանքի նշանաւոր մասունքները հետևեալներն են.

1) Սբ. Գրիգոր Լուսաւորչի աջը, որ շինուած է արծաթից և ոսկեջրած. բութ և մատնեմատը իրար հետ ծալած են ձեռքի դաստակի վրայ և այդպիսով սբ. աջը խաղաղութիւն տալու միջոցին բռնած դիրքն ունի։ Մատնեմատին հագցրած է մի կանաչ ակնով զարդարուած գեղեցիկ մատանի. բազուկի երկու ծայրերը շրջապատուած են ակնազարդ ապարանջաններով։ Սբ. աջի վրայի գրուածքից երևում է, որ շինուել է ՌՃԼԴ հայոց թուին (1134 —

ւարեցոյց զմեզ. շինեցի զկամուրջս, կանգնեցի զխաչս յիշատակ նմա և ի մխիթարութիւն ինձ և ի կեանս ծնողաց և եղբարց մերոց. յիշեցէք ի Քս. Ցս.»։

Խաչի ճակատը, որ այժմ կոտրուած և վայր է ընկած, կրում է հետևեալ արձանագրութիւնը.

«Սուրբ տէրունական»։

## VIII.

## ՎԱՆՔԻ ՍՐԲՈՒԹԻՒՆՆԵՐԸ

---

Վանքի սրբութիւնները կամ սրբոց մասունքները պահւում են սբ. Նշան եկեղեցու խորաններից մէկում՝ առանձին արկղի մէջ. այս պատկառելի աւանդներն եկեղեցու գլխաւոր հարստութիւնն են կազմում և վանքն աւելի նուիրական դարձնում ժողովրդի աչքում։ Մասունքներից մեծ մասը նուիրուած են զանազան անձերից վերջին դարերում. յայտնի է, որ հնումը սովորութիւն կար, որ նշանաւոր ընտանիքները կամ իշխանական տոհմերը մեծ գնով ձեռք էին բերում մի որև է սրբազան մասունք և պահում կամ թէ վերջը նուիրում իրենց մայրենի եկեղեցուն. այսպէս օրինակ Բագրատունեաց արքայական տունն ունէր սբ. Նշանի մասունքը, որ յետոյ Աշոտ Ողորմածի ամուսին Խոսրովանոյշը նուիրեց Հաղբատայ վանքին։ Վանքի նշանաւոր մասունքները հետևեալներն են.

1) Սբ. Գրիգոր Լուսաւորչի աջը, որ շինուած է արծաթից և ոսկեջրած. բութ և մատնեմատը իրար հետ ծալած են ձեռքի դաստակի վրայ և այդպիսով սբ. աջը խաղաղութիւն ասելու միջոցին բռնած դիրքն ունի։ Մատնեմատին հագցրած է մի կանաչ ակնով զարդարուած գեղեցիկ մատանի. բազուկի երկու ծայրերը շրջապատուած են ակնազարդ ապարանջաններով։ Սբ. աջի վրայի գրուածքից երևում է, որ շինուել է ՌՃԼԴ հայոց թուին (1134 —

1685) Եղիազար կաթուղիկոսի և վրաց Գօրգի խանի թագաւորութեան ժամանակ։

2) Սր. Յովհան Օձնեցի իմաստասէր կաթուղիկոսի աջը. նոյնպէս արծաթեայ և ոսկեջրած, նոյն ձևով. շինուած է նոյն թուականին, զարդարուած է ակներով և մի մատանի է կրում. շինուած է «ի թագաւորութեան Շահ Սուլէյմանին, և հայրապետութեան Տեառն Եղիազարու և խանութեան Լօռու Թահմազ Ղուլիխան և Աղաշահմուրադբէգին սուրբ Օհանաթէմ Սբազին և Շահզադուն շինեցաւ ձեռամբ ուստայ Յովսէփին և Սարգսին»..։

3) Թովմա առաքեալի ականջը, որ ապառաժ կոչուած ոսկրն է. փաթաթուած է բամբակի մէջ և դրուած մի աւետարանաձև, ակնազարդ արծաթեայ պահարանի մէջ, որ դրսից ծածկւում է ոսկեջրած փոքրիկ երկփեղկեան դռնով։ Դռնակի ճակատին նկարուած է Թովմա առաքեալը՝ ձեռքին բռնած մի թուղթ, որի վրայ արաբերէն տառերով գրութիւն կայ։

4) Թովմա առաքեալի մասունքը, որ դրուած է արծաթեայ ոսկեջրած սիրուն խաչի մէջ. իսկ խաչը դրուած է մի աւետարանաձև արծաթեայ և ոսկեջրած ծանր պահարանի մէջ, որ իր մեծութեամբ ու գեղեցկութեամբ գերազանցում է բոլոր մասունքների պահարաններին։ Այս արծաթեայ շքեղ պահարանի մէջ, ապակեայ ծածկի տակ դրուած են զանազան քարեր և ապակիներից մէկի վրայ գրուած է. «Համբարձման տեղի քարիցն է, որ համբարձաւ Տէրն մեր». երկրորդ ապակու վրայ գրուած է. «սրբազան սբ. Գերեզմանի վիմիցն է, որ մշտապէս բերէ զլոյս իւր առ հաւատացեալս»։ Պահարանի վրայ նկարուած են Պօղոս-Պետրոս առաքեալները, իսկ դրանցից վերև հրեշտակներ ու ամպեր։ Պահարանի յետևը գրուած յիշատակարանից երևում է, որ շինուած է 1817 թուին։

5) Ղուկաս աւետարանչի ծնոտի մասը, որ ամփոփուած է աւետարանաձև արծաթեայ պահարանի մէջ. մասունքը նկատելի է. պահարանի փականները զարդարուած են ար-

ծաթեայ և ոսկեջրած պատկերներով։ Պահարանի յետևի փայտի վրայի գրուածքից երևում է, որ պահարանը շինել է տուել Բարսեղ եպիսկոպոսը։

6) Մասն սբ. Նշանի, որ դրուած է ականակուռ խաչի մէջ, իսկ խաչը դրուած է վերոյիշեալ աւետարանաձև պահարանի մէջ՝ Ղուկաս Աւետարանչի ծնօտի հետ։

7 Սբ. Աստուածածնայ մազը և զգեստի կտորը. դըրուած են գեղեցիկ, ականակուռ խաչի մէջ. խաչն էլ դրուած է աւետարանաձև պահարանի մէջ, որ շինուած է արծաթից և ոսկեզօծ է։ Պահարանի վրայ գրուած յիշատակարանից երևում է, որ այս մասունքն ու պահարանը վանքին ընծայել է Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանցը։

Բացի յիշեալ նշանաւոր մասունքներից կան նաև բազմաթիւ արծաթեայ մեծ ու փոքր խաչեր, բուրվառներ, որոնք համարեա բոլորն էլ վերջին դարերի գործ են և պատրաստուած Ռուսաստանում, ինչպէս երևում է նրանցից շատերի վրայ եղող սլաւոնական գրերից. այդպիսի կազմ ունի և այն մեծադիր աւետարանը, որի յիշատակարանից իմանում ենք, որ Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանի անձնական գործածութեան համար է եղել. «ի վայելումն անձին իւրոյ»—1217 թուին (1768)։

## IX.

### ՎԱՆՔԻ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ

---

1) Աւետարան. փոքրիկ դիրքով, արծաթեայ կազմով, նկարներով զարդարուած և Յիսուսի կեանքից առնուած պատկերներով. բոլորագիր մանր տառերով գրուած է նուրբ մագաղաթի վրայ։ Ձեռագրի մի երեսի վրայ մանր տառերով գրուած է. «... Մոնի Աղէքսանդրացւոյ բազմաշխատութեամբ եթող մեզ զաւետարան Մատթէոսեան զհամաբարբառս այլոց աւետարանչացն զգրուածս եդեալ առ ընթեր միմեանց որպէս զի հարկէ դիպեալ շարից կարգեցից ևս ատականէր.

ծաղկեայ և ոսկեզօծ պատկերներով։ Պահարանի յետևի փայ-
տի վրայի գրուածքից երևում է, որ պահարանը շինել է տուել
Բարսեղ եպիսկոպոսը։

6) Մասն սբ. Նշանի, որ դրուած է ականակուռ խաչի
մէջ, իսկ խաչը դրուած է վերոյիշեալ աւետարանաձև պա-
հարանի մէջ՝ Ղուկաս Աւետարանչի ծնօտի հետ։

7 Սբ. Աստուածածնայ մազը և զգեստի կտորը. դըր-
ուած են գեղեցիկ, ականակուռ խաչի մէջ. խաչն էլ դրուած
է աւետարանաձև պահարանի մէջ, որ շինուած է արծաթից
և ոսկեզօծ է։ Պահարանի վրայ գրուած յիշատակարանից
երևում է, որ այս մասունքն ու պահարանը վանքին ըն
ծայել է Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանցը։

Բացի յիշեալ նշանաւոր մասունքներից կան նաև բազ-
մաթիւ արծաթեայ մեծ ու փոքր խաչեր, բուրվառներ, ո-
րոնք համարեա բոլորն էլ վերջին դարերի գործ են և պատ-
րաստուած Ռուսաստանում, ինչպէս երևում է նրանցից շա-
տերի վրայ եղող ռուսերէնական գրերից. այդպիսի կազմ ունի
և այն մեծադիր աւետարանը, որի յիշատակարանից իմա-
նում ենք, որ Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանի անձ-
նական գործածութեան համար է եղել. «ի վայելումն ան-
ձին իւրոյ»—1217 թուին (1768)։

# IX.

## ՎԱՆՔԻ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ

---

1) Աւետարան. փոքրիկ դիրքով, արծաթեայ կազմով,
նկարներով զարդարուած և Յիսուսի կեանքից առնուած
պատկերներով. բոլորագիր մանր տառերով գրուած է նուրբ
մագաղաթի վրայ։ Ձեռագրի մի երեսի վրայ մանր տառերով
գրուած է. «... Մոնի Աղէքսանդրացւոյ բազմաշխատութեամբ
եթող մեզ զաւետարան Մատթէոսեան զհամաբարբառս այլոց
աւետարանչացն զգրուագս եդեալ առ ընթեր միմեանց որ-
պէս զի հարկէ դիպեալ շարից կարգեցից եւ ապականէր.

որչափ ըստ միոյ յորընթերցուածոյս, այլ զի ողջանդամ և գայլոցն ևս բնաւ զմարմնոյ և զչարի ունիցիս գիտել զանձն յիւրսն ըստ իւրաքանչիւր աւետարանի և ի տեղի յորս Նոքիմրք անձեան ասել ճշմարտութեամբ և աշխատասիրութենէ…»։ Այս յիշատակարանի սկիզբն ու վերջը չկայ։

Ձեռագրի վերջը կայ մի ուրիշ յիշատակարան, որից երեւում է, որ աւետարանը գրուած է Ղուկաս սարկաւագի ձեռքով Հայոց ՌՃԻԱ (1121—1672) թուին, Յակոբ Ջուղայեցու կաթողիկոսութեան ժամանակ Սիւնեաց երկրի Բազարչայ գիւղում, Պարսից Շահ-Սուլէյման փոքրի օրով։ Շարունակութեան մէջ տրուած է նոյնպէս հետևեալը.

«Վասն բազում մեղաց մերոց մարախ եկն ի տունս Ղափանայ և Սիւնեաց և ի տեղիս տեղիս աւերութիւնս արար վասն անթիւ մեղաց մերոց և ձու իւր ամբարեաց երեսս երկրի. մեք ոչ գիտացինք զինչ լինելոց է այն Աստուծոյ է գիտելի. ինքն Քրիստոս ողորմեսցի ստեղծուածոց իւրոց և նմա փառք յաւիտեանս ամէն. Ապրիլի իդ (24) աւարտեցաւ»։

2) Աւետարան. փոքր դիրքով, արծաթեայ ոսկեզօծ կազմի մէջ, գրուած է նուրբ մագաղաթի վրայ՝ գեղեցիկ համահաւասար գրերով։ Ձեռագիրը պատկերազարդ է. սկզբումը կան տասներկու գունաւոր և ոսկեզօծ նկարներ. իւրաքանչիւր աւետարանի սկզբումն էլ նկարուած է համապատասխան աւետարանչի պատկերը։

Ձեռագրի սկզբումն օտար գրչով գրուած է. «Վասն Հասանի իշխանազնեայ Տեառն Յովսէփ առաքելոյ շաւիղ արքեպիսկոպոսի և առաջնորդի ազգիս Հայոց որք են ընդ իշխանութեամբ մեծի Ռուսայ և Հոռոմոց»։

Կայ դարձեալ մի այլ օտար ձեռքով գրուած յիշատակարան, որի սկիզբը պակաս է և բովանդակութիւնը հետեւեալն է. «… Որ զպտուղ բարեպաշտութեան արարեալ է զայս գեղեցկանկար սուրբ աւետարանս և ետ ընծայ առ սուրբ Հոգի եկեղեցիս Հայոց յԱմստերդամայ, յիշատակ իւրն և զիւր ննջեցեալ ծնողաց հօրն Եսայեայ և մօրն Մեռիսին և կենդանի եղբարցն Սահակին, Թումանին, Յովհաննիսին, Մկրտչին

*և քեռն Եղիսաբէթին և որք միանգամ Հայր մերիւ ողորմի ասացողացդ ինքն Քրիստոս ողորմեսցի աստ և ի հանդերձեալն ըստ մեծի ողորմութեան իւրում, ամէն։ Ի թուոյ Փրկչի 1759 և ամսեան դեկտեմբերի 6 գրեցաւ ի քաղաքն յԱմստերդամ»։*

*Ձեռագրի վերջը կայ նոյնպէս մի ուրիշ յիշատակարան հետևեալ բովանդակութեամբ.*

*«Գրեցաւ սբ. աւետարանս ի Կոստանդնուպօլիս թվին Հայոց ՌՂԳ (1093—1644) յիշատակ Խօջա մահտեսի Ծատուրին և ծնողացն իւրոց Մալինին և Հոփսիմէին և կողակցին Ղազամզութլու և որդւոցն իւրոց Բոնթումասին, Գալստին և Պետրոսին. դարձեալ յիշեցէք զմահտեսի Ծատուրն որ ետ զսուրբ աւետարանս Նոր-Ջուղայու սբ. Աստուածածին եկեղեցւոյն յիշատակ իւր և հանգուցեալ իւրոյ Բարաղամին, որ մանուկ տիօք հանգեաւ ի Տէր, որոյ հոգին հանգուսցէ Տէր ի դասս ընտրելոցն. ամէն. դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զնորոգող սրբոյ աւետարանի ի թվին մերոյ ՌՃՂԱ (1191—1742) զաւագ երէցն Տէր Յովսէփն»... յիշելով դարձեալ մի շարք քահանաների անուններ, շարունակում է. «և միւս Տէր-Սարգիս Վանեցիս, որ եմս կարգող սրբոյ գըրքիս և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ. ամէն»։*

*Վերջին յիշատակարանի պարունակութիւնն է.*

*«Վերստին ստացայ զսբ. աւետարանս այս և նուիրեցի ի դուռն Սանահնու սբ. Աստուածածին վանիցն իմոց հայրենեաց ի յիշատակ մարմնաւոր ծնողաց, ի Տէր հանգուցեալ Սանահնեցի Երկայնաբազուկ Արղութեանց Շեօշ բէգին և պարկեշտագնաց Քեթևանին և եղբարցս Մովսէս բէգին, Բէժան բէգին և Փարսադանին, քերցս և ամենայն զաւակաց նոցա. Յովսէփ արքեպիսկոպոս Ռուսաց երկրի եղեալ ամենայն Հայոց ազգին և հիմնադիր Նոր-Նախիջևանու և Գրիգորուպօլու քաղաքացն Հայոց յամի Փրկչին ի 1793, իսկ Հայոց ի ՌՄԽԲ (1242) յուլիս ամսոյ ի 5-ն ի Մոսկով քաղաք»։*

3) Աւետարան. մեծ գիրքով, մագաղաթի վրայ գրուած. Թէ սկզբում և թէ վերջում յիշատակարաններ ունի, որոնցից երևում է, որ աւետարանը գրել է Ստեփաննոս վարդապետը և ընծայել Սանահնի վանքի սբ. Աստուածածին եկեղեցուն. նուէրն ընդունել է սբ. Աստուածածնի փակակալ և սպասաւոր Յովհաննէս վարդապետը հայոց ՋԹ (909 — 1460) թուին։

Այս ձեռագրի մէջ կան նաև վանքին ընծայուած զանազան կալուածների մասին տեղեկութիւններ և կալուածների վաճառման վկայաթղթեր։

Ահա այս է Սանահնի վանքի ձեռագրների բոլոր հարստութիւնը.. ։ Ա՜յն վանքի, որի քարաշէն ու քանդակագործ դարաններում հարիւրաւոր և գուցէ նաև հազարաւոր ձեռագրներ էին շարուած, որի շրջակայ անմատչելի քարաժայռերից անգամ քարացած ձեռագրների կապոցներ հանուեցան...։

Ինչ որ անվնաս էր թողել վայրենի ազգերի բռնակալութիւնն ու յափշտակութիւնը, այն էլ ոչնչացրեց մեր խորին, անյատակ տգիտութիւնը...։

